## ՄԵՐ ՀԵՂԻՆԱԿՆԵՐԻՆ

«Լենինյան ուղիով» ամսագրի խմբագրությունը խնդրում է հոդվածներ ուղարկելիս ճշտորեն պահպանել հետևյալ կանոնները. տեսական բնույթի հոդվածները՝ 18 մեքենագրական էջից ոչ ավելի, պրակտիկ աշխատանքը և առաջավոր փորձը լուսաբանող հոդվածները՝ 8—10, նամակներն ու թղթակցությունները 4—6, գրախոսականները և մամուլի տեսությունները՝ 6—8 էջ:

Անդրկովկասի ու Հայաստանի հեղափոխական շարժման թեմաներով գրված և Հայաստանում մարքսիզմ-լենինիզմի տարածմանը նվիրված հոդվածները պետք է ունենան ռուսերեն ամփոփում՝ 8 տողի չափով:

Հոդվածները պետք է մեքենագրված լինեն երկու ինտերվալով, երկու օրինակից, հեղինակի կողմից ստորագրված, նշելով հեղինակի լրիվ անունը, հայրանունը և ազգանունը, հասցեն, աշխատանքի վայրն ու հեռախոսի համարը: Խմբագրությանը հանձնված հոդվածներից մեկը պետք է լինի մեքենագրվածի առաջին օրինակը: Հոդվածում անհրաժեշտ է ցույց տալ մեջբերումների և թվական տվյալների աղբյուրները:

Մարքսիզմ-լենինիզմի կլասիկների, կուսակցության և սովետական պետության ղեկավարների, միջազգային բանվորական ու կոմունիստական շարժման ականավոր գործիչների աշխատություններից, պաշտոնական փաստաթղթերի ժողովածուներից վերցված քաղվածքները, վկայակոչումները պետք է լինեն երկերի հատորյակների կամ աշխատությունների հայերեն, իսկ եթե այդպիսիք չկան՝ ռուսերեն վերջին հրատարակությունից:

Տեսական և գիտական բնույթի հոդվածների վերջում պարտադիր է նշել օգտագործված աղբյուրների համառոտ ցանկը:

Սույն պահանջները խախտողների հոդվածները չեն տպագրվի: Ներկայացված հոդվածն անհետևանք կմնա, եթե այն ամբողջովին կամ հատվածներով հրապարակված լինի մամուլի և ինֆորմացիայի որևէ օրգանում:

Խմբագրությանն ուղարկված հոդվածները չեն վերադարձվում:


# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

3

ՄԱՐՏ 1976

ԼՈՒՅՍ Է ՏԵՍՆՈՒՄ 1922 Թ.
ИЗДАЕТСЯ С 1922 Г.

ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ԿԿ-Ի ՏԵՍԱԿԱՆ-ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

«Ленинян угнов» («По ленинскому пути») — теоретичесский и политический журнал ЦК КП Армении


## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ


ԻՆՖՈՐՄԱՑԻՈՆ ՀԱՂՈՐԴԱԳՐՈՒԹՅՈՒՆ ՍՈՎԵՏԱԿԱՆ ՄԻՈՒԹՅԱՆ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ XXV ՀԱՄԱԳՈՒՄԱՐԻ ՄԱՍԻՆ . . . 3

ԻՆՖՈՐՄԱՑԻՈՆ ՀԱՂՈՐԴԱԳՐՈՒԹՅՈՒՆ ՍՈՎԵՏԱԿԱՆ ՄԻՈՒԹՅԱՆ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ԿԵՆՏՐՈՆԱԿԱՆ ԿՈՄԻՏԵԻ ՊԼԵՆՈՒՄԻ ՄԱՍԻՆ . . . . . . . . . . . . 4

ՍՄԿԿ ԿԵՆՏՐՈՆԱԿԱՆ ԿՈՄԻՏԵԻ ՀԱՇՎԵՏՎՈՒԹՅՈՒՆԸ ԵՎ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ՀԵՐԹԱԿԱՆ ԽՆԴԻՐՆԵՐԸ ՆԵՐՔԻՆ ՈՒ ԱՐՏԱՔԻՆ ՔԱՂԱՔԱԿԱՆՈՒԹՅԱՆ ԲՆԱԳԱՎԱՌՈՒՄ. ՍՄԿԿ ԿԵՆՏԿՈՄԻ ԳԼԽԱՎՈՐ ՔԱՐՏՈՒՂԱՐ ԸՆԿԵՐ Լ. Ի. ԲՐԵԺՆԵՎԻ ԶԵԿՈՒՅՑՈՒՄԸ 1976 ԹՎԱԿԱՆԻ ՓԵՏՐՎԱՐԻ 24-ԻՆ . 5

ԸՆԿԵՐ Լ. Ի. ԲՐԵԺՆԵՎԻ ԵԶՐԱՓԱԿՄԱՆ ԽՈՍՔԸ . . . . . . . 78

ՍՈՎԵՏԱԿԱՆ ՄԻՈՒԹՅԱՆ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ XXV ՀԱՄԱԳՈՒՄԱՐԻ ԲԱՆԱՁԵՎԸ ԸՆԿԵՐ Լ. Ի. ԲՐԵԺՆԵՎԻ «ՍՄԿԿ ԿԵՆՏՐՈՆԱԿԱՆ ԿՈՄԻՏԵԻ ՀԱՇՎԵՏՎՈՒԹՅՈՒՆԸ ԵՎ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ՀԵՐԹԱԿԱՆ ԽՆԴԻՐՆԵՐԸ ՆԵՐՔԻՆ ՈՒ ԱՐՏԱՔԻՆ ՔԱՂԱՔԱԿԱՆՈՒԹՅԱՆ ԲՆԱԳԱՎԱՌՈՒՄ» ԶԵԿՈՒՅՑՄԱՆ ԱՌԹԻՎ . . . . . . . . 80

ՍՈՎԵՏԱԿԱՆ ՄԻՈՒԹՅԱՆ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ XXV ՀԱՄԱԳՈՒՄԱՐԻ ՈՐՈՇՈՒՄԸ «ՍՍՀՄ ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ՏՆՏԵՍՈՒԹՅԱՆ ԶԱՐԳԱՑՄԱՆ 1976—1980 ԹՎԱԿԱՆՆԵՐԻ ՀԻՄՆԱԿԱՆ ՈՒՂՂՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ» ՍՄԿԿ ԿԵՆՏԿՈՄԻ ՆԱԽԱԳԾԻ ԱՌԹԻՎ . . . . . . . 81

ԸՆԿԵՐ Լ. Ի. ԲՐԵԺՆԵՎԻ ՃԱՌԸ ՀԱՄԱԳՈՒՄԱՐԻ ՓԱԿՄԱՆ ԺԱՄԱՆԱԿ . 82

ԱԶԱՏՈՒԹՅՈ՜ՒՆ ԻՄՊԵՐԻԱԼԻԶՄԻ ԵՎ ՌԵԱԿՑԻԱՅԻ ԿԱԼԱՆԱՎՈՐՆԵՐԻՆ. ՍՈՎԵՏԱԿԱՆ ՄԻՈՒԹՅԱՆ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ XXV ՀԱՄԱԳՈՒՄԱՐԻ ՀԱՅՏԱՐԱՐՈՒԹՅՈՒՆԸ . . . . . . . . . 86

ԼԵՆԻՆԻ ԴՐՈՇՈՎ ԴԵՊԻ ԿՈՄՈՒՆԻԶՄ . . . . . . . . . 88

С О Д Е Р Ж А Н И Е


Информационное сообщение **о XXV съезде Коммунистической партии Советского Союза** . . . . . . 3

Информационное сообщение **о Пленуме Центрального Комитета Коммунистической партии Советского Союза** . 4

Отчет Центрального Комитета ЦК КПСС и очередные задачи партии в области внутренней и внешней политики. Доклад Генерального секретаря ЦК КПСС товарища Л. И. Брежнева . . . . 5

Заключительное слово Л. И. Брежнева . . . 78

Резолюция XXV съезда Коммунистической партии Советского Союза по докладу товарища Л. И. Брежнева — Отчет Центрального Комитета КПСС и очередные задачи партии в области внутренней и внешней политики . 80

Постановление XXV съезда Коммунистической партии Советского Союза по проекту ЦК КПСС «Основные направления развития народного хозяйства СССР на 1976—1980 годы» . . . . . . 81

Речь товарища Л. И. Брежнева при закрытии съезда . . 82

Свободу узникам империализма и реакции! **Заявление XXV съезда Коммунистической партии Советского Союза** . 86

Под знаменем Ленина — к коммунизму . . . . . 88



© Издательство ЦК КП Армении. «Ленинян угиов», 1976.




**ԻՆՖՈՐՄԱՑԻՈՆ ՀԱՂՈՐԴԱԳՐՈՒԹՅՈՒՆ**

# ՍՈՎԵՏԱԿԱՆ ՄԻՈՒԹՅԱՆ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ XXV ՀԱՄԱԳՈՒՄԱՐԻ ՄԱՍԻՆ

**1976** թվականի փետրվարի 24-ից մարտի 5-ը Մոսկվայում, Կրեմլի Համագումարների պալատում տեղի ունեցավ Սովետական Միության կոմունիստական կուսակցության XXV համագումարը:

Համագումարին մասնակցում էին 4998 պատգամավորներ և 96 երկրների կոմունիստական, բանվորական, ազգային-դեմոկրատական և սոցիալիստական կուսակցությունների 103 պատվիրակություններ:

Համագումարը ներածական հակիրճ ճառով բաց արեց ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեի գլխավոր քարտուղար ընկ. **Լ. Ի. ԲՐԵԺՆԵՎԸ:** Պատգամավորները միահամուռ ընտրեցին համագումարի նախագահություն, քարտուղարություն, խմբագրական և մանդատային հանձնաժողովներ:

Այնուհետև հաստատվեց համագումարի հետևյալ օրակարգը.

1. ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեի հաշվետվությունը և կուսակցության հերթական խնդիրները ներքին ու արտաքին քաղաքականության բնագավառում:
2. ՍՄԿԿ Կենտրոնական վերստուգիչ հանձնաժողովի հաշվետվությունը:
3. ՍՍՀՄ ժողովրդական տնտեսության զարգացման 1976—1980 թվականների հիմնական ուղղությունները:
4. Կուսակցության կենտրոնական մարմինների ընտրություններ:

«ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեի հաշվետվությունը և կուսակցության հերթական խնդիրները ներքին ու արտաքին քաղաքականության բնագավառում» զեկուցմամբ համագումարում հանդես եկավ ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար ընկեր **ԼԵՈՆԻԴ ԻԼՅԻՉ ԲՐԵԺՆԵՎԸ,** որին պատգամավորները և հյուրերը դիմավորեցին բուռն, երկարատև օվացիայով:

ՍՄԿԿ Կենտրոնական վերստուգիչ հանձնաժողովի հաշվետվությամբ հանդես եկավ վերստուգիչ հանձնաժողովի նախագահ ընկ. **Գ. Ֆ. ՍԻԶՈՎԸ:**

ՍՄԿԿ Կենտկոմի հաշվետվության և կենտրոնական վերստուգիչ հանձնաժողովի հաշվետվության շուրջ տեղի ունեցած մտքերի փոխանակությանը մասնակցեցին 44 մարդ:

Համագումարում եզրափակման խոսքով հանդես եկավ ընկեր **Լ. Ի. ԲՐԵԺՆԵՎԸ:**

Օրակարգի առաջին հարցի վերաբերյալ համագումարը միաձայն ընդունեց բանաձև: Համագումարը միաձայն հաստատեց նաև ՍՄԿԿ Կենտրոնական վերստուգիչ հանձնաժողովի հաշվետվությունը:

Համագումարի պատգամավորները միաձայն ընդունեցին ՍՄԿԿ XXV համագումարի «Ազատություն իմպերիալիզմի և ռեակցիայի կալանավորներին» հայտարարության նախագծի տեքստը:

«ՍՍՀՄ ժողովրդական տնտեսության զարգացման 1976—1980 թվականների հիմնական ուղղությունները» զեկուցումով հանդես եկավ ՍՍՀՄ Մինիս-

տըրների սովետի նախագահ ընկ. Ա. Ն. ԿՈՍԻԳԻՆԸ, որին համագումարի պատգամավորները և հյուրերը դիմավորեցին ջերմորեն:

Համագումարը միահամուռ որոշում ընդունեց «ՍՍՀՄ ժողովրդական տնտեսության զարգացման 1976—1980 թվականների հիմնական ուղղություն-ները» ՍՄԿԿ Կենտկոմի նախագծի առթիվ:

Համագումարի պատգամավորները ընտրեցին կուսակցության կենտրո-նական մարմինները:

Մարտի 5-ին տեղի ունեցավ ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեի պլենումը, որը միաձայն ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար ընտրեց ընկեր Լ. Ի. ԲՐԵԺՆԵՎԻՆ: Պլենումն ընտրեց ՍՄԿԿ Կենտկոմի քաղբյուրո, ՍՄԿԿ Կենտ-կոմի քարտուղարություն, հաստատեց ՍՄԿԿ Կենտկոմին առընթեր կուսակ-ցական վերահսկողության կոմիտեի նախագահին: ՍՄԿԿ կենտրոնական վերստուգիչ հանձնաժողովը իր նիստում ընտրեց հանձնաժողովի նախագահ:

Համագումարի փակման ժամանակ ճառով հանդես եկավ ընկեր Լ. Ի. ԲՐԵԺՆԵՎԸ:

Վերջում պատգամավորները և հյուրերը մեծ ոգևորությամբ երգեցին կու-սակցության հիմնը՝ «Ինտերնացիոնալը»:

## ԻՆՖՈՐՄԱՑԻՈՆ ՀԱՂՈՐԴԱԳՐՈՒԹՅՈՒՆ

# ՍՈՎԵՏԱԿԱՆ ՄԻՈՒԹՅԱՆ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ԿԵՆՏՐՈՆԱԿԱՆ ԿՈՄԻՏԵԻ ՊԼԵՆՈՒՄԻ ՄԱՍԻՆ

1976 ԹՎԱԿԱՆԻ ՄԱՐՏԻ 5-ԻՆ ՏԵՂԻ ՈՒՆԵՑԱՎ ՍՈՎԵՏԱԿԱՆ ՄԻՈՒԹՅԱՆ ԿՈՄՈՒՆԻՍՏԱ-ԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ XXV ՀԱՄԱԳՈՒՄԱՐԻ ԸՆՏՐԱԾ ՍՄԿԿ ԿԵՆՏՐՈՆԱԿԱՆ ԿՈՄԻՏԵԻ ՊԼԵՆՈՒՄԸ:

ՊԼԵՆՈՒՄԸ ՄԻԱՀԱՄՈՒՌ ԿԵՐՊՈՎ ԸՆԿԵՐ Լ. Ի. ԲՐԵԺՆԵՎԻՆ ԸՆՏՐԵՑ ՍՄԿԿ ԿԵՆՏԿՈՄԻ ԳԼԽԱՎՈՐ ՔԱՐՏՈՒՂԱՐ:

ՊԼԵՆՈՒՄԸ ՄԻԱՀԱՄՈՒՌ ԿԵՐՊՈՎ ԸՆՏՐԵՑ ՍՄԿԿ ԿԵՆՏԿՈՄԻ ՔԱՂԲՅՈՒՐՈ՝ ՀԵՏԵՎՅԱԼ ԿԱԶՄՈՎ.

ՔԱՂԲՅՈՒՐՈՅԻ ԱՆԴԱՄՆԵՐ՝ ԸՆԿԵՐՆԵՐ Լ. Ի. ԲՐԵԺՆԵՎ, ՅՈՒ. Վ. ԱՆԴՐՈՊՈՎ, Ա. Ա. ԳՐԵՉԿՈ, Վ. Վ. ԳՐԻՇԻՆ, Ա. Ա. ԳՐՈՄԻԿՈ, Ա. Պ. ԿԻՐԻԼԵՆԿՈ, Ա. Ն. ԿՈՍԻԳԻՆ, Ֆ. Դ. ԿՈՒԼԱ-ԿՈՎ, Դ. Ա. ԿՈՒՆԱԵՎ, Կ. Տ. ՄԱԶՈՒՐՈՎ, Վ. Վ. ՇՉԵՐԲԻՑԿԻ, Ա. ՅԱ. ՊԵԼՇԵ, Ն. Վ. ՊՈԴԳՈՌ-ՆԻ, Գ. Վ. ՌՈՄԱՆՈՎ, Մ. Ա. ՍՈՒՍԼՈՎ, Դ. Ֆ. ՈՒՍՏԻՆՈՎ:

ՔԱՂԲՅՈՒՐՈՅԻ ԱՆԴԱՄՈՒԹՅԱՆ ԹԵԿՆԱԾՈՒՆԵՐ՝ ԸՆԿԵՐՆԵՐ Հ. Ա. ԱԼԻԵՎ, Պ. Ն. ԴԵՄԻ-ՉԵՎ, Պ. Մ. ՄԱՇԵՐՈՎ, Բ. Ն. ՊՈՆՈՄԱՐՅՈՎ, Շ. Ռ. ՌԱՇԻԴՈՎ, Մ. Ս. ՍՈԼՈՄԵՆՑԵՎ:

ՍՄԿԿ ԿԵՆՏԿՈՄԻ ՔԱՐՏՈՒՂԱՐՆԵՐ ԵՆ ԸՆՏՐՎԵԼ ԸՆԿԵՐՆԵՐ Լ. Ի. ԲՐԵԺՆԵՎԸ, Մ. Ա. ՍՈՒՍԼՈՎԸ, Ա. Պ. ԿԻՐԻԼԵՆԿՈՆ, Ֆ. Դ. ԿՈՒԼԱԿՈՎԸ, Դ. Ֆ. ՈՒՍՏԻՆՈՎԸ, Բ. Ն. ՊՈՆՈՄԱՐՅՈ-ՎԸ, Ի. Վ. ԿԱՊԻՏՈՆՈՎԸ, Վ. Ի. ԴՈԼԳԻԽԸ, Կ. Ֆ. ԿԱՏՈՒՇԵՎԸ, Մ. Վ. ԶԻՄՅԱՆԻՆԸ, Կ. ՈՒ. ՉԵՌՆԵՆԿՈՆ:

ՊԼԵՆՈՒՄԸ ՍՄԿԿ ԿԵՆՏԿՈՄԻՆ ԱՌԸՆԹԵՐ ԿՈՒՍԱԿՑԱԿԱՆ ՎԵՐԱՀՍԿՈՂՈՒԹՅԱՆ ԿՈ-ՄԻՏԵԻ ՆԱԽԱԳԱՀ ՀԱՍՏԱՏԵՑ ԸՆԿ. Ա. ՅԱ. ՊԵԼՇԵԻՆ:

# ՍՄԿԿ ԿԵՆՏՐՈՆԱԿԱՆ ԿՈՄԻՏԵԻ ՀԱՇՎԵՏՎՈՒԹՅՈՒՆԸ ԵՎ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ՀԵՐԹԱԿԱՆ ԽՆԴԻՐՆԵՐԸ ՆԵՐՔԻՆ ՈՒ ԱՐՏԱՔԻՆ ՔԱՂԱՔԱԿԱՆՈՒԹՅԱՆ ԲՆԱԳԱՎԱՌՈՒՄ

## ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար ընկեր Լ. Ի. Բրեժնևի զեկուցումը 1976 թվականի փետրվարի 24-ին

*Համագումարի ընկեր պատգամավորնե՛ր:*

*Հարգելի հյուրե՛ր:*

*Հինգ տարի է մեզ բաժանում այն օրերից, երբ այս դահլիճում աշխատում էր Սովետական Միության կոմունիստական կուսակցության XXIV համագու-մարը: Ընդամենը միայն հինգ տարի: Բայց որքան հագեցած էր այդ ժամանա-կը: Կոմունիստների համար, մեր ամբողջ ժողովրդի համար դա, հիրավի, վիթ-խարի նշանակություն ունեցող իրադարձությունների և գործերի ժամանակա-շրջան էր:*

*Բառացիորեն մեր աչքի առաջ աշխարհը փոխվում ու փոխվում է դեպի լավը: Մեր ժողովուրդը, մեր կուսակցությունը այդ փոփոխությունների պասիվ հայեցողներ չեն: Ո՛չ, մենք դրանց ակտիվ մասնակիցներն ենք: Կոմունիզմ կա-ռուցող սովետական ժողովրդի աշխատանքը, միջազգային ասպարեզում ՍՄԿԿ-ի և սովետական պետության գործունեությունը՝ այս ամենը արժանի ավանդ են հասարակական առաջադիմության գործում: Եվ միթե կարելի է չհպարտանալ դրանով:* (Ծափահարություններ): *Միթե կարելի է խորին գոհու-նակություն չզգալ մեր գաղափարների ուժից, մեր քաղաքականության ներգոր-ծունությունից, մեր ժողովրդի ստեղծարար եռանդից:* (Ծափահարություններ):

*Անցյալ, XXIV համագումարը առաջ քաշեց սկզբունքային բնույթի մի շարք խոշոր խնդիրներ: Այսօր, գիտենալով, թե ինչպես էին լուծվում այդ խնդիրները և ինչպիսի արդյունքներ ձեռք բերվեցին, մենք կարող ենք վստահությամբ ա-սել՝ ճիշտ կուրս էր մշակվել:* (Ծափահարություններ):

*Ներքին քաղաքականության բնագավառում, հավատարիմ մնալով մաս-սաների դրության բարելավումը անկյունաքար դարձնելու լենինյան պատգա-մին, համագումարը խնդիր դրեց՝ ապահովել ժողովրդի կյանքի նյութական և կուլտուրական մակարդակի նշանակալի բարձրացում:*

*Նշվեց նաև դրան հասնելու ուղին՝ վճռականորեն բարձրացնել հանրային*

կոմիտեն է: Այդ պայմանագիրը հուսալիորեն է ծառայում խաղաղության և սոցիալիզմի շահերին: Ամենքի համար ակնհայտ է այն նախաձեռնությունների նշանակությունը, որոնցով վերջին տարիներս հանդես եկավ մեր քաղաքական կոնսուլտատիվ կոմիտեն: Չէ՞ որ դրանցից շատերը դրվեցին միջազգային խոշոր համաժողովների որոշումների հիմքում կամ իրենց արտացոլումը գտան միջպետական մի շարք կարևոր երկկողմ ակտերում:

Մենք վճռականապես դեմ ենք ինչպես աշխարհը հակադիր ռազմական բլոկների բաժանելուն, այնպես էլ սպառազինությունների մրցավազքին: Այդ հարցում մեր դիրքավորումը քաջ հայտնի է: Սակայն անհրաժեշտ է ամենայն պարզությամբ հայտարարել. քանի դեռ պահպանվում է ՆԱՏՕ բլոկը, քանի դեռ միլիտարիստական շրջանները սպառազինությունների մրցավազք են կատարում, մեր երկիրը Վարշավայի պայմանագրի մյուս մասնակիցների հետ կամրապնդի այդ ռազմա-քաղաքական դաշինքը: (Ծափահարություններ):

Ընկերնե՛ր: Սոցիալիզմի երկրները ավելի ու ավելի նշանակալի դեր են խաղում նաև համաշխարհային էկոնոմիկայում: Սոցիալիստական համագործակցությունը այժմ դարձել է աշխարհում ամենադինամիկ տնտեսական ուժը: Անցած հինգ տարում նրա մեջ մտնող երկրների ինդուստրիան չորս անգամ ավելի արագ է զարգացել, քան զարգացած կապիտալիստական պետությունների արդյունաբերությունը: 1975 թվականին մեր համագործակցության երկրները ավելի քան երկու անգամ շատ արդյունաբերական արտադրանք թողարկեցին, քան «ընդհանուր շուկայի» երկրները:

Կուսակցության Կենտրոնական կոմիտեն մշտական ուշադրություն է նվիրել սոցիալիստական պետությունների հետ տնտեսական համագործակցության հարցերին, նրա հետագա զարգացմանը՝ փոխադարձ շահավետության և սոցիալիստական ինտերնացիոնալիզմի հիմունքներով: Այս բնագավառում անցած հնգամյակը քիչ նոր բան չբերեց:

Կենտկոմի քաղբյուրոն հատկապես կարևոր է համարում մեր և ՏՓԽ-ի մյուս երկրների կողմից 1971 թվականին համատեղ ընդունված՝ սոցիալիստական տնտեսական ինտեգրացման երկարաժամկետ ծրագիրը: Այդ ծրագիրը, ընկերներ, սոցիալիստական երկրների համագործակցությունը հասցնում է շատ ավելի բարձր աստիճանի, քան պարզապես առևտրի զարգացումը: Ծրագիրը նշանակում է, օրինակ, բնական ռեսուրսների համատեղ յուրացում ընդհանուր օգտի համար, նրա բոլոր մասնակիցների կարիքների բավարարման նպատակին ուղղված արդյունաբերական խոշոր կոմպլեքսների համատեղ շինարարություն, մեր երկրների ձեռնարկությունների և արդյունաբերության ամբողջ ճյուղերի՝ շատ տարիների համար պլանավորված կոոպերացում: Կոմպլեքսային ծրագրի կատարման աշխատանքը հասցրեց այն բանին, որ արդեն այժմ զգալիորեն խորացել է մեր տնտեսական փոխգործողությունը, մեր երկրների էկոնոմիկաները ավելի մեծ չափով են միմյանց փոխլրացնում, որը փոքր օգուտ չի բերում նրանցից յուրաքանչյուրին:

Լավ տեմպերով է աճում նաև առևտուրը: Հինգ տարում ՏՓԽ-ի երկրների հետ մեր ապրանքաշրջանառությունը ավելի քան կրկնապատկվել է: Այժմ այն կազմում է մի պատկառելի գումար՝ տարեկան 26 միլիարդ ռուբլի:

Հենվելով ձեռք բերվածի վրա, մենք այժմ կարող ենք անել հաջորդ առաջընթաց քայլը: Օրակարգում է երկարաժամկետ նպատակային ծրագրերի մշակումն ու կատարումը: Դրանց նպատակն է՝ ընդհանուր ջանքերով ապահովել էներգիայի, վառելիքի, հումքի հիմնական տեսակների արագ աճող պահանջմունքները, ավելի լրիվ բավարարել պարենամթերքի և ժողովրդական սպառման արդյունաբերական ապրանքների պահանջը, բարձրացնել մեքենաշինության մակարդակը, արագացնել տրանսպորտի զարգացումը: Սրանք մեր հերթական ընդհանուր խնդիրներն են:

Իհարկե, այդպիսի մեծ ու նոր գործում չեն կարող բարդություններ չառաջանալ: Մենք մեզ մոտ բազմիցս այդ հարցերը քննարկել ենք Կենտկոմի պլենումներում, քաղբյուրոյում: Խոսքը վերաբերում է ոչ միայն տնտեսական մեծ, փոխադարձ շահավետությանը, այլև քաղաքական հսկայական նշանակություն



ունեցող խնդրի: Խոսքը վերաբերում է մեր համագործակցության նյութական հիմքի ամրապնդմանը: Այդ հարցին հենց այդպես էր մոտենում Կենտկոմի քաղբյուրոն: Մենք գտնում ենք, որ եղբայրական երկրների կողմից կոլեկտիվ կերպով նախատեսված միջոցառումների, նրանց հանդեպ մեր ունեցած պարտավորությունների խստիվ և ճշգրիտ կատարումը պետպլանի, մինիստրությունների, գերատեսչությունների, միավորումների և ձեռնարկությունների, բոլոր նրանց սրբազան պարտականությունն է, ովքեր առնչված են աշխատանքի այդ բնագավառի հետ: Թույլ տվեք վստահություն հայտնել, որ մեր ընկերները այդ գործերին կվերաբերվեն պատշաճ պատասխանատվությամբ ու սոցիալիստական համագործակցության կյանքի համար, համաշխարհային սոցիալիզմի հաջողությունների համար դրանց բացառիկ կարևոր նշանակության լիակատար ըմբռնումով: (Երկարատև ծափահարություններ):

Վերջին տարիներս զգալիորեն ընդլայնվել է մեր գաղափարական համագործակցությունը եղբայրական երկրների կուսակցությունների հետ: Կանոնավոր կերպով, և ոչ թե դեպքից-դեպք, հանդիպումներ են ունենում մեր կուսակցությունների այն ղեկավար աշխատողները, որոնք զբաղվում են գաղափարական և միջազգային գործունեությամբ: Գիտությունների շատ ուղղություններ այժմ զարգանում են սոցիալիստական երկրների գիտնականների կոլեկտիվ ջանքերով: Տեղի է ունենում նաև մասսայական ինֆորմացիայի օրգանների՝ ռադիոյի, հեռուստատեսության, մամուլի օգտակար համագործակցություն: Այս ամենը օգնում է բարձրացնելու գաղափարա-դաստիարակչական աշխատանքի մակարդակը մեր կուսակցություններից յուրաքանչյուրում և ավելի հաջող կերպով հանդես գալու երկու սիստեմների գաղափարական հակամարտության ասպարեզում: Դա այժմյան պայմաններում շատ կարևոր է, քանի որ գաղափարական պայքարի պրոբլեմները ավելի ու ավելի են մղվում առաջին պլան, իսկ սոցիալիզմի մասին ճշմարտությունը այդ պայքարի զորեղ զենքն է: (Ծափահարություններ):

Սոցիալիզմն արդեն այսօր հսկայական ներգործություն է ունենում աշխարհի հարյուր միլիոնավոր մարդկանց մտքերի և զգացմունքների վրա: Նա աշխատավոր մարդկանց համար ապահովում է ազատություն, իսկական դեմոկրատական իրավունքներ, բարեկեցություն, գիտելիքներին տիրապետելու ամենալայն հնարավորություն, ապագայի հաստատ վստահություն: Նա բերում է խաղաղություն, բոլոր երկրների սուվերենության հարգում և միջպետական իրավահավասար համագործակցություն, հենարան է ծառայում իրենց ազատության և անկախության համար պայքարող ժողովուրդներին:

Իսկ վաղվա օրը, անտարակույս, կբերի սոցիալիզմի անսահման հնարավորությունների, կապիտալիզմի հանդեպ նրա պատմական գերազանցության նոր վկայություններ: Մյուս եղբայրական կուսակցությունների հետ մեկտեղ, ՍՄԿԿ-ն այսուհետև ևս ամեն ինչ կանի, որպեսզի հաղթանակած սոցիալիզմի օրինակը ավելի ու ավելի պայծառորեն շողա: (Բուռն, երկարատև ծափահարություններ):

Հատկապես և առանձնակի է դրված, իհարկե, Չինաստանի հետ հարաբերությունների հարցը: Նրա ներկայիս ղեկավարների քաղաքականությունը բացահայտորեն ուղղված է սոցիալիստական պետությունների մեծամասնության դեմ: Ավելին, այն ուղղակի շաղկապվում է ամբողջ աշխարհի ամենածայրահեղ ռեակցիայի դիրքավորման հետ՝ սկսած արևմտյան երկրների միլիտարիստներից և լարվածության թուլացման թշնամիներից մինչև Հարավային Աֆրիկայի ռասիստներն ու Չիլիի ֆաշիստական կառավարողները: Այդ քաղաքականությունը ոչ միայն ամբողջովին խորթ է սոցիալիստական սկզբունքներին և իդեալներին, այլ, ըստ էության, դարձել է իմպերիալիզմի կարևոր ռեզերվը սոցիալիզմի դեմ նրա պայքարում:

Բոլոր խաղաղասեր ժողովուրդների համար մեծ վտանգ են ներկայացնում Պեկինի տենդագին փորձերը՝ վիժեցնելու լարվածության թուլացումը, թույլ չտալու զինաթափում, անվստահություն ու թշնամանք սերմանելու պետությունների միջև, նրա ձգտումը՝ հրահրելու համաշխարհային պատերազմ, որ-

պեսզի ինքը դրանից շահ կորզի։ Պեկինի այդպիսի քաղաքականությունը խորապես հակասում է բոլոր ժողովուրդների շահերին։ Մենք հակահարված տանք այդ հրձիգային քաղաքականությանը, կպաշտպանենք սովետական պետության, սոցիալիստական համագործակցության, համաշխարհային կոմունիստական շարժման շահերը։ (Երկարատև ծափահարություններ)։ Հիմա արդեն քիչ է ասել, որ մաոյական գաղափարախոսությունն ու քաղաքականությունն անհամատեղելի են մարքս-լենինյան ուսմունքի հետ։ Նրանք ուղղակի թշնամական են այդ ուսմունքի համար։ (Բացականչություններ դահլիճից՝ ճիշտ է)։

Չինաստանի հետ ունեցած հարաբերություններում մեր կուսակցությունը հաստատորեն վարում է XXIV համագումարի սահմանած կուրսը։ Այդ կուրսի ճշտությունը հաստատել է կյանքը։ Մենք այսուհետև ևս պայքար կմղենք մաոիզմի դեմ, սկզբունքային պայքար, անհաշտ պայքար։ (Ծափահարություններ)։

Դրա հետ մեկտեղ, կկամենայի կրկին հավաստել, որ Չինաստանի, ինչպես և ուրիշ երկրների վերաբերմամբ, մենք հաստատ հետևում ենք իրավահավասարության, սուվերենության և տերիտորիալ ամբողջականության հարգման, միմյանց ներքին գործերին չմիջամտելու, ուժ չգործադրելու սկզբունքներին։ Մի խոսքով, մենք պատրաստ ենք նորմալացնել հարաբերությունները Չինաստանի հետ խաղաղ գոյակցության սկզբունքների հիման վրա։ Ավելին, կարելի է վստահությամբ հայտարարել՝ եթե Պեկինում կվերադառնան, իրոք, մարքսիզմ-լենինիզմի վրա հիմնված քաղաքականության, կհրաժարվեն սոցիալիստական երկրների համար թշնամական կուրսից, կկանգնեն սոցիալիզմի աշխարհի հետ համագործակցության ու համերաշխության ուղու վրա, ապա դա համապատասխան արձագանք կգտնի մեր կողմից և հնարավորություն կբացվի ՍՍՀՄ-ի և ՉԺՀ-ի միջև զարգացնելու բարի հարաբերություններ, որոնք համապատասխանեն սոցիալիստական ինտերնացիոնալիզմի սկզբունքներին։ Խոսքը պատկանում է չինական կողմին։

## 2. ՀԱՄԱԳՈՐԾԱԿՑՈՒԹՅԱՆ ԱՄՐԱՊՆԴՈՒՄԸ ԱԶԱՏԱԳՐՎԱԾ ԵՐԿՐՆԵՐԻ ՀԵՏ։ ՆՐԱՆՑ ԴԵՐԻ ԲԱՐՁՐԱՑՈՒՄԸ ՀԱՄԱՇԽԱՐՀԱՅԻՆ ԶԱՐԳԱՑՄԱՆ ՄԵՋ

Ընկերնե՛ր։ Հաշվետու ժամանակաշրջանում աճեցին և ամրապնդվեցին Սովետական Միության կապերը գաղութային կախումից ազատագրված երկրների հետ կամ, ինչպես նրանց դեռ անվանում են, զարգացող երկրների հետ։ Հատկապես կարևոր է այն, որ հարստացավ մեր կապերի քաղաքական բովանդակությունը։

Զարգացող երկրների հետ համագործակցության ամրապնդմանը, անտարակույս, նպաստեցին նրանց ներքին կյանքում և միջազգային քաղաքականության մեջ կատարված լուրջ տեղաշարժերը։

Որո՞նք են ազատագրված շատ երկրներում վերջին տարիներս կատարված փոփոխությունների գլխավոր ուղղությունները։ Դրանք են՝ արդյունաբերության զարգացման մեջ ծանրության կենտրոնի փոխադրումը պետական սեկտոր, ֆեոդալական հողատիրության վերացումը, օտարերկրյա ձեռնարկությունների ազգայնացումը, որը նպատակամղված է իրենց բնական ռեսուրսների նկատմամբ երիտասարդ պետությունների արդյունավետ սուվերենության հաստատմանը, սեփական կադրերի ձևավորմանը։ Մի խոսքով, հակառակ դժվարություններին, աշխարհի այդ մասում առաջադիմական խոր փոփոխություններ են կատարվում։ Դա, իհարկե, պատմական կարևորություն ունեցող պրոցես է։

Ազատագրված շատ երկրներում տեղի է ունենում դասակարգային ուժերի սահմանազատման բարդ պրոցես, աճում է դասակարգային պայքարը։ Դա տարբեր կերպ է դրսևորվում։ Առաջադիմական նոր տեղաշարժեր են կատարվել սոցիալիստական կողմնորոշում ունեցող արաբական, աֆրիկյան և ասիական երկրների էկոնոմիկայում ու քաղաքական կյանքում։ Կան նաև երկրներ,



որտեղ զարգացումը շարունակվում է ընթանալ կապիտալիստական ուղիով։

Սոցիալիստական նպատակներ հռչակած, առաջադիմական վերափոխումներ կատարող որոշ վարչակարգեր և քաղաքական կազմակերպություններ ենթարկվեցին ներքին և արտաքին ռեակցիայի ուժգին ճնշմանը։ Ինդիրա Գանդիի կառավարության դեմ աջ շրջանների՝ վերջերս կատարած արշավանքը, եգիպտական հեղափոխության սոցիալական ու քաղաքական նվաճումները խարխլելու փորձերը՝ ահա իրադարձությունների համանման զարգացման օրինակներ։

Կամ վերցնենք Անգոլայի Ժողովրդական Հանրապետությունը։ Դեռ հազիվ ծնված այդ առաջադիմական պետությունը դարձավ օտարերկրյա ինտերվենցիայի օբյեկտ։ Դա իմպերիալիզմի արածն էր և անկախ Աֆրիկայի երդվյալ թշնամիների՝ հարավ-աֆրիկյան ռասիստների, ինչպես նաև նրանց արածը, ովքեր ստանձնեցին նրանց գործակիցների անվայելուչ դերը։ Ուստի Անգոլայի պայքարը ի պաշտպանություն իր անկախության՝ արժանացավ ամբողջ աշխարհի առաջադեմ ուժերի պաշտպանությանը, իսկ այդ պայքարի հաջողությունը մի անգամ ևս վկայեց, որ ոչ ոք չի կարող ընկճել ժողովուրդների ազատության ձգտումը։ (Երկարատև ծափահարություններ)։

Զարգացող երկրներում տեղի ունեցող բարդ պրոցեսների նկատմամբ Սովետական Միության վերաբերմունքը հստակ է ու որոշակի։ Սովետական Միությունը չի միջամտում ուրիշ երկրների ժողովուրդների ներքին գործերին։ Զարգացման սեփական ուղին ընտրելու՝ յուրաքանչյուր ժողովրդի, յուրաքանչյուր երկրի սրբազան իրավունքի հարգումը լենինյան արտաքին քաղաքականության անխախտ սկզբունքն է։ Բայց մենք չենք թաքցնում մեր հայացքները։ Զարգացող երկրներում, ինչպես և ամենուրեք, մենք առաջադիմության, դեմոկրատիայի և ազգային անկախության ուժերի կողմն ենք և նրանց վերաբերվում ենք որպես մեր բարեկամների ու պայքարի ընկերների։ (Ծափահարություններ)։

Մեր կուսակցությունն աջակցում է և կաջակցի այն ժողովուրդներին, որոնք կռվում են իրենց ազատության համար։ Ընդ որում, Սովետական Միությունը չի փնտրում որևէ օգուտ իր համար, չի ընկնում կոնցեսիաների ետևից, չի ձգտում հասնել քաղաքական տիրապետության, ձեռք բերել ռազմական բազաներ։ Մենք վարվում ենք այնպես, ինչպես մեզ թելադրում են մեր հեղափոխական խիղճը, մեր կոմունիստական համոզմունքները։ (Երկարատև ծափահարություններ)։

Մի հայացք գցելով ժամանակակից աշխարհի պատկերին, չի կարելի ուշադրություն չդարձնել այնպիսի կարևոր մոմենտի վրա, ինչպիսին է մի շարք պետությունների լուրջ ուժեղացումը, որոնք դեռ վերջերս գաղութներ կամ կիսագաղութներ էին։

Նրանց մեծամասնության մասին կարելի է որոշակիորեն ասել, որ նրանք իմպերիալիզմի դեմ մղվող հակամարտության մեջ հարաճուն եռանդով պաշտպանում են իրենց քաղաքական ու տնտեսական իրավունքները, ձգտելով ամրապնդել իրենց անկախությունը, բարձրացնել իրենց ժողովուրդների սոցիալական, տնտեսական և կուլտուրական զարգացման մակարդակը։

Նկատելիորեն ակտիվացել է զարգացող երկրների արտաքին քաղաքականությունը։ Դա դրսևորվում է շատ ուղղություններում՝ չմիանալու շարժման քաղաքական գծում, աֆրիկյան միասնության կազմակերպության, զարգացող երկրների կողմից ստեղծված տնտեսական տարբեր միավորումների գործունեության մեջ։ Այժմ արդեն պարզ է, որ համաշխարհային դասակարգային ուժերի ներկա հարաբերակցության պայմաններում ազատագրված երկրները լիովին կարող են հակադրվել իմպերիալիստական թելադրանքին, հասնել արդարացի, այսինքն՝ իրավահավասար տնտեսական հարաբերությունների։ Պարզ է նաև մի այլ բան՝ ժողովուրդների խաղաղության և անվտանգության ընդհանուր պայքարի մեջ այդ երկրների՝ այժմ արդեն նշանակալի ավանդը լիովին կարող է է՛լ ավելի ծանրակշիռ դառնալ։

Մեր համագումարի ամբիոնից մենք վերստին ընդգծում ենք՝ Սովետական

Միությունը լիովին պաշտպանում է երիտասարդ պետությունների օրինական ձգտումները, նրանց վճռականությունը՝ լիովին ազատվելու իմպերիալիստական շահագործումից, ինքնուրույնաբար տնօրինելու իրենց ազգային հարստությունները: (Ծափահարություններ):

Կասեմ արաբական երկրների հետ մեր ունեցած հարաբերությունների մասին: Անցած հինգ տարում լավ փոխըմբռնում հաստատվեց մեր և Սիրիայի միջև: Մենք համաձայնեցված ենք գործում միջազգային շատ պրոբլեմների և, ամենից առաջ, մերձավորարևելյան պրոբլեմի կապակցությամբ: Կարևոր իրադարձություն եղավ Իրաքի հետ բարեկամության ու համագործակցության պայմանագրի կնքումը, որի հիման վրա զարգանում են մեր հարաբերությունները: Ընդլայնվում և խորանում է համագործակցությունը Ալժիրի, Հարավային Եմենի հետ: Նշանակալի քայլեր են արվել սովետա-լիբիական կապերի զարգացման ուղղությամբ: Ամրապնդվել են բարեկամական կոնտակտները Պաղեստինի ազատագրման կազմակերպության հետ:

Վերջին ժամանակներս որոշակի ուժեր համառ ջանքեր են ձեռնարկում խարխլելու սովետա-եգիպտական հարաբերությունները: Ինչ վերաբերում է ՍՍՀՄ-ին, ապա մենք հավատարիմ ենք մնում դրանց ամրապնդման սկզբունքային գծին: Այն արտացոլված է ՍՍՀՄ-ի և Եգիպտոսի բարեկամության ու համագործակցության պայմանագրում, որը մենք դիտում ենք որպես ո՛չ միայն մեր երկրների, այլև ամբողջ արաբական աշխարհի շահերին համապատասխանող հարաբերությունների երկարաժամկետ հիմք:

Այդ բոլոր տարիներին Սովետական Միությունը հետևողական աջակցություն էր ցույց տալիս իսրայելական ագրեսիայի հետևանքները վերացնելու համար արաբական ժողովուրդների պայքարին: Մեր երկիրը օգնում էր, և, ինչպես ցույց տվեց 1973 թվականի հոկտեմբերյան պատերազմը, արդյունավետ կերպով օգնում էր ագրեսորին դիմակայող երկրների՝ Եգիպտոսի, Սիրիայի, Իրաքի ռազմական պոտենցիալի ամրապնդմանը: Մենք պաշտպանում էինք արաբների քաղաքական պայքարը ՄԱԿ-ում և նրանից դուրս:

Մերձավոր Արևելքում այժմ պատերազմ չկա: Բայց այնտեղ չկա նաև խաղաղություն, մանավանդ անդորրություն: Եվ ով կհամարձակվի երաշխավորել, որ պատերազմական գործողությունների բոցը վերստին չի բռնկվի: Այդ վտանգը կպահպանվի, քանի դեռ իսրայելական բանակները մնում են օկուպացված հողերում: Այն կպահպանվի, քանի դեռ իրենց օրինական իրավունքներից զրկված են և հուսահատական պայմաններում ապրում են իրենց հողերից քշված հարյուր հազարավոր պաղեստինցիներ, և քանի դեռ Պաղեստինի արաբ ժողովուրդը զրկված է իր ազգային պետությունն ստեղծելու հնարավորությունից: Մերձավոր Արևելքի կայուն խաղաղությունը պահանջում է նաև, որ երաշխավորվեն այդ շրջանի բոլոր պետությունների անվտանգությունը, նրանց անկախ գոյության ու զարգացման իրավունքը: Մի՞թե պարզ չէ, թե որքան լուրջ պատասխանատվություն են վերցնում իրենց վրա նրանք, ովքեր, հետապնդելով եսամոլական նպատակներ, մերձավորարևելյան հարցի կարգավորումը դարձնում են քաղաքական խաղի առարկա, ովքեր օգտագործում են սեպարատ մասնակի պայմանավորվածությունները, որպեսզի ձգձգեն իսկական լուծումների ժամանակը կամ էլ առհասարակ դրանք հարցականի տակ դնեն:

Ինչ վերաբերում է Սովետական Միությանը, ապա նա սկզբունքային և կոնստրուկտիվ դիրք է գրավում: ՍՍՀՄ-ը, որպես Ժնևի կոնֆերանսի համանախագահ, պատրաստ է գործակցելու կոնֆլիկտի իսկական կարգավորման նպատակ հետապնդող բոլոր ջանքերին: Մենք պատրաստ ենք մասնակցել Մերձավոր Արևելքի բոլոր երկրների սահմանների անվտանգության և անձեռնմխելիության միջազգային երաշխիքներին՝ ՄԱԿ-ի շրջանակներում կամ այլ հիմքի վրա: Նման երաշխիքներին, ի դեպ ասած, մեր կարծիքով, ՍՍՀՄ-ի և ԱՄՆ-ի հետ մեկտեղ, կարող էին մասնակցել նաև Անգլիան և Ֆրանսիան: Դրանից գործը միայն կշահեր:

Մենք կողմնակից ենք, որ պայմաններ ստեղծվեն զարգացնելու մեր հարաբերությունները Մերձավոր Արևելքի բոլոր երկրների հետ, մենք կանխակալ կարծիքներ չունենք նրանցից որևէ մեկի դեմ: Վերջապես, մենք պատրաստ ենք



մասնակցելու նաև այնպիսի պրոբլեմի լուծման որոնումներին, ինչպիսին է սպառազինությունների մրցավազքի դադարեցումը այդ շրջանում. բայց, իհարկե, միայն սերտորեն կապակցելով Մերձավոր Արևելքի դրության ընդհանուր կարգավորման հետ: Այդ պրոբլեմը լուծել նախքան այդպիսի կարգավորումը՝ կնշանակեր հավասարության նշան դնել ագրեսորի և նրա զոհի միջև:

Հաշվետու ժամանակաշրջանում կենտկոմը մեծ ուշադրություն է նվիրել նորմալ, իսկ որտեղ հնարավոր է, նաև բարեկամական հարաբերությունների զարգացմանը Ասիայի պետությունների հետ:

Ամենից առաջ անհրաժեշտ է ասել Հնդկաստանի հետ մեր բազմակողմանի համագործակցության մասին: Մենք առանձնահատուկ նշանակություն ենք տալիս այդ մեծ երկրի հետ ունեցած բարեկամությանը: Անցած հինգ տարում սովետա-հնդկական հարաբերությունները նոր աստիճանի բարձրացան: Մեր երկրների միջև կնքվեց խաղաղության, բարեկամության ու համագործակցության պայմանագիր: Արդեն այդ կարճ ժամանակամիջոցում պարզորոշ դրսևորվեց նրա հսկայական նշանակությունը մեր երկկողմ կապերի համար, նրա դերը, որպես Հարավային Ասիայում և, ամբողջությամբ վերցրած, մայրցամաքում կայունացնող գործոնի:

Հնդկաստանի Հանրապետության հետ քաղաքական ու տնտեսական սերտ համագործակցությունը մեր մշտական կուրսն է: Սովետական մարդիկ համակրանքով, ավելին, համերաշխության զգացումով են վերաբերվում Հնդկաստանի խաղաղասիրական արտաքին քաղաքականությանը, այն քաջերի պայքարին, որ երկրի առաջադեմ ուժերը մղում են իրենց առջև կանգնած սոցիալ-տնտեսական դժվարին խնդիրների լուծման համար: Մենք Հնդկաստանի ժողովրդին ու կառավարությանը լիակատար հաջողություն ենք մաղթում այդ պայքարում: (Ծափահարություններ):

Իրադարձությունների ընթացքը ցույց տվեց Հարավային Ասիայի պրոբլեմների նկատմամբ Սովետական Միության մոտեցման ճշտությունը: Մենք ողջունեցինք 1971 թվականին հնդկա-պակիստանյան ռազմական կոնֆլիկտի դադարեցումը և այն ժամանակ կատարված կարևոր տեղաշարժերը աշխարհի այդ մասում պետությունների միջև նորմալ հարաբերություններ հաստատելու ուղղությամբ: Մենք գոհունակությամբ նշում ենք, որ ինչ-որ չափով կարողացանք նպաստել այդ դրական պրոցեսին:

Խոսելով առհասարակ Ասիայի պետությունների հետ մեր հարաբերությունների մասին, անհրաժեշտ է հիշատակել մեր բարի հարևան Աֆղանստանին, որի հետ մենք վերջերս երկարացրինք չեզոքության ու փոխադարձաբար չհարձակվելու՝ գրեթե կեսդարյա վաղեմություն ունեցող պայմանագիրը: Կհիշատակեմ նաև Թուրքիային, որի հետ համագործակցությունը գլխավորապես տնտեսական ոլորտից հետզհետե տարածվում է նաև քաղաքական հարցերի վրա:

Սովետական Միությունը մտադիր է այսուհետև ևս ակտիվորեն մասնակցել Ասիայի մայրցամաքում խաղաղության և անվտանգության ամրապնդման, այստեղ ևս իրավահավասար համագործակցության զարգացման ուղիների որոնումներին: Մենք կգործենք այդ ուղղությամբ, կգործենք ինչպես երկկողմ կոնտակտների շրջանակներում, այնպես էլ բազմակողմ հիմքի վրա: Մենք բազմիցս մեր նկատառումներն ենք շարադրել այդ մասին և ընդգծել, որ պատրաստ ենք ամենայն ուշադրությամբ վերաբերվել այն բոլոր առաջարկություններին, որոնք թելադրվում են Ասիայի կայուն խաղաղության և անվտանգության, կոլեկտիվ ջանքերով դրանց ապահովման մտահոգությամբ:

Հաշվետու ժամանակաշրջանում քիչ բան չի արվել նաև Աֆրիկայի պետությունների հետ բարեկամական կապերի հետագա զարգացման համար: 70-ական թվականների առաջին կեսին այդ մայրցամաքի հողում ծավալվեց գաղութային սիստեմի կործանման եզրափակիչ փուլը: Սովետական կոմունիստները ջերմորեն ողջունում են Գվինեա-Բիսաուի և Կանաչ Հրվանդանի կղզիների, Մոզամբիկի և Անգոլայի ժողովուրդների հաղթանակը, որը պսակում է նրանց երկարամյա հերոսական պայքարը հանուն անկախության: ՍՄԿԿ-ը միշտ համերաշխ է եղել այդ ժողովուրդների հետ, համակողմանի

աջակցություն ցույց տվել պայքարող հայրենասերներին: Իսկ այսօր մենք ուրախ ենք, որ այդ երկրների հետ մեր միջպետական հարաբերությունները ձևավորվում են անկեղծ բարեկամության և փոխըմբռնման ոգով: (Ծափահարություններ):

Անցած տարիներին շարունակում էին ամրապնդվել կապերը մեր այնպիսի վաղեմի բարեկամների հետ, ինչպիսիք են Գվինեայի Հանրապետությունը և Կոնգոյի Ժողովրդական Հանրապետությունը: Սոմալիի Դեմոկրատական Հանրապետության հետ սերտ փոխհարաբերություններն է՛լ ավելի ամրապնդեց բարեկամության ու համագործակցության մասին կնքված պայմանագիրը: Ընդլայնվեցին բարի հարաբերությունները Աֆրիկայի խոշորագույն երկրի՝ Նիգերիայի հետ:

Մենք անում ենք և կանենք ամեն ինչ, որպեսզի զարգացնենք և ամրապնդենք բարեկամությունը նրանց հետ, ովքեր իրոք ձգտում են դրան: Գաղութային սիստեմի կործանման հետևանքով առաջ եկած պետությունների գերակշռող մեծամասնության հետ մեզ միավորում է խորին նվիրվածությունը խաղաղությանն ու ազատությանը, նողկանքը՝ ագրեսիայի և գերիշխանության բոլոր ձևերի նկատմամբ, մի երկրի կողմից մյուսի շահագործման նկատմամբ: Արմատական ձգտումների այդ ընդհանրությունը այն հարուստ ու բեղմնավոր հողն է, որի վրա այսուհետև ևս կամրապնդվի ու կծաղկի մեր բարեկամությունը: (Ծափահարություններ):

## 3. ՀԱՐԱԲԵՐՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ԶԱՐԳԱՑՈՒՄԸ ԿԱՊԻՏԱԼԻՍՏԱԿԱՆ ՊԵՏՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ՀԵՏ

Կապիտալիստական պետությունների նկատմամբ մեր քաղաքականության մեջ գլխավորը եղել է ու մնում է պայքարը խաղաղ գոյակցության սկզբունքների հաստատման, կայուն խաղաղության համար, նոր համաշխարհային պատերազմի առաջացման վտանգի թուլացման, իսկ հեռանկարում՝ նաև դրա վերացման համար: Կարելի է արձանագրել, որ վերջին հինգ տարում հաջողվեց այդ ուղղությամբ նշանակալի առաջադիմության հասնել:

«Սառը պատերազմից», երկու աշխարհների պայթունակ առճակատումից անցումը դեպի լարվածության թուլացում կապված էր, նախ և առաջ, համաշխարհային ասպարեզում ուժերի հարաբերակցության մեջ կատարված փոփոխությունների հետ: Բայց պահանջվեցին մեծ ջանքեր, որպեսզի մարդիկ, և հատկապես նրանք, ովքեր ղեկավարում են պետությունների քաղաքականությունը, սկսեին ընտելանալ այն մտքին, որ բնական գործ է ոչ թե պատերազմի եզրին հավասարակշռություն պահպանելը, այլ վիճելի հարցերի շուրջը բանակցելը, ոչ թե առճակատումը, այլ խաղաղ համագործակցությունը:

Մեծ դեր խաղաց այն, որ մեր կուսակցությունը կարողացավ հստակորեն որոշել միջազգային անվտանգության ամրապնդման պրակտիկ գործունեության հիմնական խնդիրները, դրանք արտահայտել իր XXIV համագումարում ընդունված խաղաղության ծրագրում: Սովետական իշխանության արդեն առաջին արտաքին քաղաքական քայլերը, որոնք հենվում են տարբեր հասարակարգ ունեցող պետությունների խաղաղ գոյակցության պլատֆորմի վրա, ինչպես Վ. Ի. Լենինն է ասել, աշխարհի ժողովուրդներին ցույց տվեցին «դժվարություններից, քաոսից և պատերազմների վտանգից դուրս գալու միակ ճիշտ ելքը» (Վ. Ի. Լենին, Երկեր, հատ. 33, էջ 421): Անշեղորեն հենվելով այդ պլատֆորմի վրա, մեր կուսակցությունը, հետևելով Լենինի պատգամներին և ելնելով իր խաղաղասիրական արտաքին քաղաքականության կեսդարյա փորձից, XXIV համագումարում հանդես եկավ խաղաղության ծրագրով: Այդ ծրագիրը ցույց տվեց «սառը պատերազմը» վերացնելու ռեալ ուղին, հստակ խնդիրներ դրեց պատերազմների վտանգից խաղաղ համագործակցության անցնելու պայքարում:

Այդ ծրագրի հրատապությունն ու ռեալիստականությունը հաստատեց կյանքը: Թեպետ ընդհանուր խաղաղությունը դեռ բնավ երաշխավորված չէ,



մենք բոլոր հիմքերն ունենք վստահությամբ ասելու՝ միջազգային կլիմայի առողջացումը համոզիչ կերպով վկայում է, որ կայուն խաղաղության հասնելը ոչ թե բարի ցանկություն է, այլ միանգամայն ռեալ խնդիր: Հանուն դրա լուծման կարելի է և պետք է շարունակել աշխատել առանց ուժերը խնայելու: (Ծափահարություններ):

Թույլ տվեք կանգ առնել այն աշխատանքի կոնկրետ ուղղությունների վրա, որ կատարում է մեր կուսակցությունը խաղաղության ծրագրի գործնական իրականացման ասպարեզում:

Նախ և առաջ Եվրոպայի մասին: Այստեղ լարվածության թուլացման և խաղաղության ամրապնդման ուղղությամբ կատարված փոփոխությունները, թերևս, առանձնապես շոշափելի են: Եվ դա, իհարկե, պատահական չէ:

Եվրոպայում առավել ուժեղ են սոցիալիզմի դիրքերը, սոցիալիստական պետությունների համաձայնեցված քաղաքականության ներգործությունը: XXIV համագումարը խնդիր դրեց ապահովել Եվրոպայի անվտանգությունը՝ երկրորդ համաշխարհային պատերազմի հետևանքով ստեղծված տերիտորիալ և քաղաքական իրողությունների ճանաչման հիման վրա: Այդ ուղղությամբ էլ մեր Կենտկոմը գործում էր:

Այդ հիման վրա հաջողությամբ զարգանում էր Սովետական Միության և սոցիալիստական մյուս երկրների համագործակցությունը Ֆրանսիայի հետ: Դեռ պրեզիդենտ Դը Գոլի հետ վարած բանակցությունների ժամանակվանից ավանդույթ են դարձել սովետա-ֆրանսիական բարձր մակարդակի բանակցությունները: Մի շարք հանդիպումների ընթացքում,— նախ պրեզիդենտ Պոմպիդուի, իսկ ապա պրեզիդենտ Ժիսկար դ՚Էստենի հետ,— մի շարք արտաքին քաղաքական հարցերում մերձեցան երկու երկրների դիրքերը, ակտիվացան սովետա-ֆրանսիական համակողմանի կապերն ու կոնտակտները: Այս ամենն արժանացավ ֆրանսիական ժողովրդի, Ֆրանսիայի քաղաքական կուսակցությունների մեծամասնության լայն պաշտպանությանը: Մենք բարձր ենք գնահատում Ֆրանսիայի հետ ստեղծված հարաբերությունները և պատրաստ ենք ընդլայնել նրա հետ ունեցած համաձայնության ու համագործակցության բնագավառները:

1970 թվականի պայմանագրի հիման վրա մեծ տեղաշարժ կատարվեց սովետա-արևմտագերմանական հարաբերություններում: Դրանք մտան նորմալ հունի մեջ, ընդ որում, միակ հնարավոր հիմքի վրա՝ Եվրոպայում գոյություն ունեցող սահմանները փոփոխելու պահանջներից հրաժարվելու հիման վրա: Այսօր ԳՖՀ-ն Արևմուտքի հետ գործարար փոխշահավետ համագործակցության ասպարեզում մեր խոշոր պարտնյորներից մեկն է: Օրեանդայում և Բոննում կանցլեր Բրանդտի հետ մեր բանակցությունները, ինչպես նաև կանցլեր Շմիդտի և պրեզիդենտ Շեելի այցերի ընթացքում Մոսկվայում կայացած բանակցությունները թույլ տվեցին բարելավել փոխըմբռնումը և առաջ մղել ԳՖՀ-ի հետ համագործակցությունը էկոնոմիկայի և մյուս բնագավառներում:

Բարդ հարցերից մեկը Արևմտյան Բեռլինի հետ առնչված կարգավորումն էր: Այդ քաղաքի շուրջը, ինչպես հայտնի է, ծագում էին ճգնաժամեր, որոնք լարված իրադրություն էին ստեղծում Եվրոպայում: Սակայն 1971 թվականի աշնանը կնքված չորս տերությունների համաձայնագիրը, ԳԴՀ-ի, ԳՖՀ-ի և Արևմտյան Բեռլինի սենատի միջև մի շարք հարցերում կայացված համաձայնությունների և պայմանավորվածությունների զուգորդությամբ, հիմնականում վերացրեց լարվածությունը: Մենք գնահատում ենք ԱՄՆ-ի, Ֆրանսիայի և Անգլիայի հետ այդ հարցում դրսևորված համագործակցությունը: Պայմաններ ստեղծվեցին այն բանի համար, որ Արևմտյան Բեռլինը վեճերի աղբյուրից վերածվի խաղաղության և լարվածության թուլացման կոնստրուկտիվ տարրի: Հարկավոր է միայն, որ բոլոր կողմերը իրականում հարգեն ձեռք բերված համաձայնությունները: Դժբախտաբար, դրանց որոշ մասնակիցներ այս տեսակետից բնավ էլ ամեն ինչ չէ, որ անում են: Մենք կպնդենք, որ խստիվ և լրիվ կատարվի այն ամենը, ինչի մասին պայմանավորվածություն կա: Սովետա-

այն չափով, ինչ չափով դրանք այսուհետև էլ կզարգանան համատեղ ստեղծված այդ ռեալիստական հիմքի վրա, երբ երկու պետությունների դասակարգային բնույթի և նրանց գաղափարախոսության ակնհայտ տարբերության պայմաններում հաստատ մտադրություն կա տարաձայնություններն ու վեճերը լուծել ոչ թե ուժով, ոչ թե սպառնալիքներով և զենք շաչեցնելով, այլ խաղաղ քաղաքական միջոցներով:

Վերջին տարիներս ԱՄՆ-ի հետ մեր հարաբերությունները զարգանում են շատ ուղղություններով: Տեղի է ունենում պատվիրակությունների, այդ թվում պառլամենտական պատվիրակությունների, աշխույժ փոխանակություն, ակտիվացել են մշակութային փոխանակումները: Ստորագրվել են սովետա-ամերիկյան շատ համաձայնագրեր, որոնք նախատեսում են զարգացնել փոխշահավետ համագործակցությունը էկոնոմիկայի, գիտության, տեխնիկայի, կուլտուրայի ամենատարբեր բնագավառներում: Դրանց մեծամասնությունը արդեն ուժի մեջ է մտել և պրակտիկայում իրականացվում է՝ ակնհայտ օգուտ բերելով երկու կողմերին, իսկ որ գլխավորն է՝ սովետական և ամերիկյան ժողովուրդների փոխըմբռնմանը:

Սովետա-ամերիկյան հարաբերությունների վերջին տարիների, ընդհանուր առմամբ, դրական զարգացումը բարդանում է, սակայն, մի շարք ոչ պակաս կարևոր գործոններով: Այդ զարգացմանը ձգտում են խանգարել ԱՄՆ-ի այն ազդեցիկ ուժերը, որոնք շահագրգռված չեն ոչ ՍՍՀՄ-ի հետ հարաբերությունների բարելավմամբ, ոչ էլ ընդհանրապես միջազգային լարվածության թուլացմամբ: Նրանք խեղաթյուրված լույսով են պատկերում Սովետական Միության քաղաքականությունը և, վկայակոչելով մտացածին «սովետական սպառնալիքը», կոչ են անում՝ նորից ուժեղացնել սպառազինությունների մրցավազքը ԱՄՆ-ում և ՆԱՏՕ-ում: Ինչպես հայտնի է, եղան նաև մեր ներքին գործերին միջամտելու փորձեր՝ կապված ԱՄՆ-ում առևտրի ասպարեզում խտրական միջոցառումներ ընդունելու հետ: Իհարկե, դրա հետ մենք հաշտվել չէինք կարող և չենք հաշտվի: Դա այն լեզուն չէ, որով կարելի է խոսել Սովետական Միության հետ: Հիմա, իմ կարծիքով, դա արդեն ամենքին պարզ է: (Ծափահարություններ):

Գաղտնիք չէ, որ որոշակի բարդություններ են կապված նաև Վաշինգտոնի քաղաքականության այն կողմերի հետ, որոնք սպառնում են ժողովուրդների ազատությանն ու անկախությանը, իրենցից ներկայացնում կոպիտ միջամտություն նրանց ներքին գործերին՝ ճնշման և ռեակցիայի ուժերի կողմում: Մենք հանդես ենք եկել և հանդես կգանք այդպիսի գործողությունների դեմ: Միևնույն ժամանակ ուզում եմ մեկ անգամ ևս ընդգծել՝ Սովետական Միությունը հաստատ մտադիր է վարել սովետա-ամերիկյան հարաբերությունների հետագա բարելավման կուրս՝ ձեռք բերված համաձայնագրերի և ստանձնած պարտավորությունների ոգուն ու տառին խստիվ համապատասխան՝ ի շահ երկու ժողովուրդների և աշխարհի խաղաղության գործի: (Ծափահարություններ):

Իրենց բովանդակությամբ ավելի ու ավելի են հարստանում մեր հարաբերությունները Կանադայի հետ, դրանք, ինչպես մենք կարծում ենք, վատ հեռանկարներ չունեն: Նկատելիորեն ընդլայնվել են կապերը Լատինական Ամերիկայի երկրների հետ: Մենք պաշտպանում ենք քաղաքական ինքնուրույնությունն ու տնտեսական անկախությունն ամրապնդելու այդ երկրների ձգտումը և ողջունում նրանց դերի մեծացումը միջազգային կյանքում:

Ճապոնիայի հետ մեր հարաբերությունների զարգացումը, ընդհանուր առմամբ, դրական ուղղությամբ է ընթանում: Սովետական Միությունը լայն առևտուր է անում Ճապոնիայի հետ: Նրա հետ կնքվել են փոխշահավետ մի շարք համաձայնագրեր տնտեսական բնագավառում: Զգալիորեն ավելի են ակտիվացել քաղաքական և հասարակական գործիչների կոնտակտները, աճում են կուլտուրական կապերը: Սակայն խաղաղ կարգավորման հարցերի կապակցությամբ Ճապոնիայում ոմանք երբեմն դրսից կատարվող ուղղակի դրդումով փորձում են ՍՍՀՄ-ին անհիմն և անօրինական պահանջներ ներկայացնել: Դա, իհարկե, բարիդրացիական հարաբերություններ պահպանելու ուղի չէ: Մենք



կարծում ենք, որ սովետա-ճապոնական հարաբերություններում օրենք պետք է լինեն հենց բարիդրացիությունն ու բարեկամական համագործակցությունը, որին և մենք ձգտում ենք: Կկամենայի հույս հայտնել, որ Ճապոնիան չի ենթարկվի գայթակղության՝ ընթանալու այն ուղիով, դեպի որը նրան կուղենային հրել նրանք, ովքեր դեմ չեն ձեռքերը տաքացնել սովետա-ճապոնական տարաձայնությունների վրա: (Ծափահարություններ):

Միջազգային կլիմայի առողջացումը բարենպաստ մթնոլորտ ստեղծեց տնտեսական, գիտատեխնիկական և կուլտուրական համագործակցության աշխուժացման համար:

Հաշվետու ժամանակաշրջանում զգալիորեն աճել և որակապես փոխվել են ՍՍՀՄ-ի տնտեսական և գիտատեխնիկական կապերը կապիտալիստական երկրների հետ: Դրա վրա ես ավելի մանրամասնորեն կանգ կառնեմ ստորև:

Անցած հնգամյակում մոտավորապես մեկուկես անգամ աճել է արտասահմանյան երկրների հետ մեր կուլտուրական փոխանակումների ծավալը:

Այդ ամենը, ընկերնե՛ր, լարվածության թուլացման նյութականացումն է, ժողովուրդների միջև խաղաղ կապերի զարգացման ուղղությամբ մեր կուսակցության ընդհանուր աշխատանքի կարևոր բնագավառը:

ՍՄԿԿ Կենտկոմի և սովետական կառավարության արտաքին քաղաքական գործունեության գլխավոր ուղղություններից մեկը, ինչպես որ դա պահանջում է խաղաղության ծրագիրը, եղել է ու մնում է պայքարը սպառազինությունների մրցավազքի դադարեցման համար, զինաթափման համար: Այսօր այդ խնդիրը ավելի սուր է դրված, քան երբևիցե: Մարդկությունը հոգնել է զենքի լեռների վրա նստած ապրելուց, իսկ իմպերիալիզմի ագրեսիվ շրջանների կողմից խրախուսվող սպառազինությունների մրցավազքը ուժեղանում է:

Սպառազինությունների մրցավազքի կողմնակիցների գլխավոր շարժառիթը, այսպես կոչված, սովետական սպառնալիքի վերաբերյալ պնդումն է: Այդ շարժառիթը օգտագործվում է թե՛ այն ժամանակ, երբ հարկավոր է ընդունել տալ ավելի բարձր ռազմական բյուջե, կրճատելով սոցիալական կարիքների համար կատարվող ծախսերը, թե՛ երբ մշակվում են մահաբեր զենքի նոր տեսակներ, ու երբ փորձում են արդարացնել ՆԱՏՕ-ի ռազմական ակտիվությունը: Իրականում, իհարկե, գոյություն չունի ոչ մի սովետական սպառնալիք ոչ Արևմուտքի համար, ոչ էլ Արևելքի համար: Այդ ամենը հրեշավոր սուտ է՝ սկզբից մինչև վերջ: Սովետական Միությունը մտադիր չէ որևէ մեկի վրա հարձակվել: Սովետական Միությանը պատերազմ պետք չէ: Սովետական Միությունը չի ավելացնում իր ռազմական բյուջեն, նա չի կրճատում, այլ անշեղորեն մեծացնում է հատկացումները ժողովրդի բարեկեցության բարձրացման համար: (Ծափահարություններ): Մեր երկիրը հետևողականորեն և անհողդողդ կերպով պայքար է մղում խաղաղության համար, մշտապես հանդես գալիս կոնկրետ առաջարկություններով, որոնք ուղղված են սպառազինությունների կրճատման, զինաթափման նպատակին:

Սովետական կոմունիստները հպարտ են, որ իրենց վրա են վերցրել դժվարին, բայց վեհ առաքելություն՝ լինելու այն մարտիկների առաջին շարքերում, որոնք պայքարում են ժողովուրդներին սպառազինությունների մրցավազքի շարունակման հետ կապված վտանգից զերծ պահելու համար: (Ծափահարություններ): Մեր կուսակցությունը բոլոր ժողովուրդներին, բոլոր երկրներին կոչ է անում՝ միավորել իրենց ջանքերը այդ կործանարար պրոցեսին վերջ տալու համար: Այդ բնագավառում մեր վերջնական նպատակը եղել է և մնում է ընդհանուր և լրիվ զինաթափումը: Դրա հետ մեկտեղ, ՍՍՀՄ-ը ամեն ինչ անում է՝ առաջադիմության հասնելու՝ դեպի այդ նպատակը տանող ճանապարհի առանձին հատվածներում:

Սովետական Միության և մյուս սոցիալիստական երկրների նախագծի հիման վրա մշակվեց, ստորագրվեց և ուժի մեջ մտավ մանրէակենսաբանական զենքն արգելելու և ոչնչացնելու միջազգային կոնվենցիան: Դա միջազգային հարաբերությունների պատմության մեջ ռեալ զինաթափման փաստորեն առաջին միջոցառումն է: Խոսքը վերաբերում է պետությունների զինանոցներից

մասսայական ոչնչացման խիստ վտանգավոր զենքի մի ամբողջ կատեգորիա վերացնելուն։

Ընդլայնվել է միջուկային զենքը չտարածելու պայմանագրի գործողության ոլորտը։ Վերջին ժամանակներս դրան միացան էլի մի շարք խոշոր պետություններ, ներառյալ ԳՖՀ-ն և Իտալիան։ Դրա հետ միասին՝ մեր մոլորակում միջուկային զենքի տարածումը թույլ չտալու հետագա արդյունավետ միջոցների ձեռնարկումը մնում է ամենակարևոր խնդիրներից մեկը։ ՍՍՀՄ-ը պատրաստ է այդ խնդրի լուծման ասպարեզում համագործակցել մյուս պետությունների հետ։

Հատկապես կասեմ ստրատեգիական սպառազինությունների հետագա սահմանափակման շուրջ վարվող սովետա-ամերիկյան բանակցությունների մասին։ Մենք դրանք վարում ենք՝ ձգտելով կենսագործել Վլադիվոստոկի 1974 թ. պայմանավորվածությունը և թույլ չտալ սպառազինությունների մրցավազքի նոր ուղի բացել, որը ի չիք կդարձներ արդեն ձեռք բերվածը։ Հասկանալի է, որ այդ հարցերի վերաբերյալ համաձայնագիրը շատ մեծ նշանակություն կունենար ինչպես ՍՍՀՄ-ի և ԱՄՆ-ի հարաբերությունների հետագա զարգացման, փոխադարձ վստահության ամրապնդման համար, այնպես էլ ընդհանուր խաղաղության ամրապնդման համար։

Բացառիկ կարևոր նշանակություն տալով այդ ամբողջ պրոբլեմին, մենք հաստատակամորեն և բազմիցս Միացյալ Նահանգներին առաջարկում էինք կանգ չառնել ստրատեգիական զենքի գոյություն ունեցող տեսակների միմիայն սահմանափակման վրա։ Մենք հնարավոր էինք համարում ավելի առաջ գնալ։ Կոնկրետ կերպով մենք առաջարկում էինք համաձայնության գալ արգելելու սպառազինության նոր, է՛լ ավելի կործանարար սիստեմների, մասնավորապես բալիստիկ հրթիռներով զինված «Թրայդենտ» տիպի նոր սուզանավերի ստեղծումը, Բ—1 տիպի նոր ստրատեգիական ռմբակոծիչների ստեղծումը ԱՄՆ-ում և համանման սիստեմների ստեղծումը ՍՍՀՄ-ում։ Ցավոք, այդ առաջարկությունները ամերիկյան կողմը չընդունեց։

Սակայն դրանք մնում են ուժի մեջ։ Հարկ կա՞ արդյոք ասելու, թե դրանց կենսագործումը որքան օգտակար կլիներ փոխադարձ վստահության ամրապնդման համար։ Բացի դրանից, երկու կողմերը հնարավորություն կստանային խնայել նշանակալի միջոցներ, դրանք օգտագործել արտադրողական նպատակների համար, մարդկանց կյանքի բարելավման համար։

Կավելացնեմ ևս մի բան։ Վերջին ժամանակներս մի շարք երկրներում բազմապատկվում են ելույթները հօգուտ այն բանի, որ Հնդկական օվկիանոսի շրջանը չդառնա այս կամ այն տերության ռազմական բազաների ստեղծման ասպարեզ։ Մենք համամիտ ենք այդ ելույթներին։ Ինչ վերաբերում է Սովետական Միությանը, ապա մենք մտադրություն չենք ունեցել և մտադրություն չունենք ռազմական բազաներ կառուցել Հնդկական օվկիանոսում։ Եվ մենք Ամերիկայի Միացյալ Նահանգներին կոչ ենք անում նույնպիսի դիրք գրավել։ (Ծափահարություններ)։

Իհարկե, կգա ժամանակ, երբ օրակարգում կդրվի ստրատեգիական սպառազինությունների սահմանափակման պրոցեսին նաև մյուս միջուկային տերություններին ներգրավելու անխուսափելիության հարցը։ Նրանցից այն տերությունները, որոնք այդ բանը չէին ցանկանա, իրենց վրա հսկայական պատասխանատվություն կվերցնեին ժողովուրդների հանդեպ։

Մեր երկրի նախաձեռնությամբ, ՄԱԿ-ի գլխավոր ասամբլեան վերջին տարիներս մի շարք կարևոր բանաձևեր ընդունեց սպառազինությունների մրցավազքը կասեցնելու և մասսայական ոչնչացման զենքի նոր տեսակների, այդպիսի զենքի նոր սիստեմների մշակումն ու արտադրությունն արգելելու հարցերի վերաբերյալ։

Խնդիրն այն է, որ այդ բանաձևերը կենսագործվեն։ Դրա ապահովումը, պետք է ուղղակի ասել, հեշտ չէ, քանի որ մի շարք խոշոր պետություններ դեռևս բացահայտորեն չեն ցանկանում դադարեցնել սպառազինությունների մրցավազքը։ Լարվածության թուլացման և զինաթափման հակառակորդները դեռևս քիչ ռեսուրսներ չունեն։ Նրանք գործում են ակտիվորեն, տարբեր ձևերով և



տարբեր ուղղություններից։ Թեև իմպերիալիզմի ագրեսիվ գործողությունների հնարավորություններն այժմ զգալիորեն սահմանափակվել են, բայց նրա էությունը մնում է նախկինը։ Ուստի խաղաղասեր ուժերը պետք է բարձր զգոնություն ցուցաբերեն։ Հարկավոր են եռանդուն գործողություններ և խաղաղության ու բարի կամքի բոլոր ուժերի միասնություն։

Այս կապակցությամբ առանձնահատուկ նշանակություն է ստանում զինաթափման համաշխարհային կոնֆերանս հրավիրելու առաջարկությունը, որը պաշտպանեց ՄԱԿ-ի անդամ երկրների գերակշռող մեծամասնությունը։

Քաղաքական լարվածության թուլացումը կարիք ունի ամրապնդվելու ռազմական լարվածության թուլացմամբ։ Խաղաղության ծրագրում առաջ է քաշվել հատուկ նպատակ՝ կրճատել զինված ուժերն ու սպառազինությունները Կենտրոնական Եվրոպայում։ Այդ հարցի շուրջ Վիեննայում տեղի ունեցող բանակցությունները շարունակվում են ահա արդեն ավելի քան երկու տարի, սակայն շոշափելի առաջադիմություն չկա։ Պատճառը մեկն է՝ ՆԱՏՕ-ի երկրները դեռևս չեն ուզում հրաժարվել բանակցությունները իրենց համար միակողմանի ռազմական առավելությունների ապահովման նպատակով օգտագործելու փորձերից։ Արևմուտքը, չգիտես ինչու, ուզում է և նույնիսկ պահանջում է, որ սոցիալիստական երկրները զիջումներ անեն ի վնաս իրենց սեփական անվտանգության։ Բայց մենք այնպես էլ չենք նկատել, որ ՆԱՏՕ-ի բլոկը հակված լինի նաև զիջումներ անելու մյուս կողմին։

Ձգտելով գործը առաջ շարժել մեռյալ կետից, սոցիալիստական պետությունները վերջերս Վիեննայում նոր առաջարկություններ մտցրին։ Մենք պատրաստ ենք համաձայնելու, որ սկզբնական փուլի համար այս տարի կրճատվեն միայն ՍՍՀՄ-ի և ԱՄՆ-ի զորքերը, իսկ բանակցությունների մյուս մասնակիցների զինված ուժերի մակարդակը առայժմ «սառեցվի» և նվազեցման ենթակա լինի երկրորդ փուլում՝ 1977—1978 թվականներին։ Մենք մտցրինք նաև միանգամայն կոնկրետ առաջարկություններ, որպեսզի երկու կողմերը կրճատեն տանկերի, միջուկային զենք կրող ինքնաթիռների, հրթիռների արձակման կայանքների թիվը՝ նպատակակետին հասցնող այդ միջոցների որոշակի քանակությամբ միջուկային զինամթերքով հանդերձ։

Մեր առաջարկությունները խարսխվում են Եվրոպայի կենտրոնում ուժերի ստեղծված հարաբերակցության պահպանման, ըստ էության, դրանց հավասարակշռության միակ ռեալիստական հիմքի վրա։ Դրանց իրականացումը վնաս չի հասցնի կողմերից ոչ մեկի անվտանգությանը։ Կկամենայի հուսալ, որ այս ամենը պատշաճ արձագանք կգտնի արևմտյան երկրներում և կարելի կլինի, վերջապես, դիսկուսիաներից անցնել զինված ուժերի և սպառազինությունների կրճատման ռեալ միջոցառումներին։

XXIV համագումարում խնդիր դրվեց. վիճելի հարցերի լուծման համար ուժ գործադրելուց և նրա գործադրման սպառնալիքից հրաժարվելը պետք է դառնա միջազգային կյանքի օրենքը։ Այդ սկզբունքը հետո արտացոլվեց ՍՍՀՄ-ի և այլ երկրների միջև կնքված մի շարք պայմանագրերում։ Այն բովանդակվում է համաեվրոպական խորհրդակցության եզրափակիչ ակտում։ Պատերազմի սպառնալիքը է՛լ ավելի թուլացնելու և զինաթափման ուղղությամբ առաջընթացի բարենպաստ պայմաններ ստեղծելու համար մենք հիմա առաջարկում ենք կնքել միջազգային հարաբերություններում ուժ չգործադրելու համաշխարհային պայմանագիր։ Դրա մասնակիցները, ներառյալ, իհարկե, միջուկային տերությունները, պարտավորություն կստանձնեին ձեռնպահ մնալ միմյանց վեճերի լուծման համար զենքի ամեն տեսակ, այդ թվում և միջուկային զենք օգտագործելուց։ Սովետական Միությունը պատրաստ է մյուս պետությունների հետ քննարկել այդ առաջարկության իրականացման գործնական քայլերը։

Այժմ մեծ է նաև խաղաղության ամրապնդման համար հասարակայնության մասսայական շարժման պատասխանատվությունը։ Անցած հնգամյակը նշանավորվեց այդ շարժման զարգացման այնպիսի ուղենիշներով, ինչպիսիք են խաղաղասեր ուժերի Մոսկվայի համաշխարհային կոնգրեսը, Եվրոպայի անվտանգության մարտիկների Բրյուսելի ասամբլեան, կանանց Բեռլինի համաշ-

խարհային կոնգրեսը։ Այդ բոլոր գործողություններում մեր կուսակցությունը, մեր երկրի հասարակայնությունը ակտիվ մասնակցություն ցուցաբերեցին։ Մենք այսուհետև ևս ուժեր չենք խնայի ժողովրդական լայն մասսաներին ներգրավելու խաղաղության ամրապնդման գործում։ (Երկարատև ծափահարություններ)։

Իր արտաքին քաղաքականության մեջ Սովետական Միությունը մտադիր է համբերատար կերպով ու հետևողականորեն որոնել տարբեր հասարակական կարգ ունեցող պետությունների խաղաղ, փոխշահավետ համագործակցության զարգացնելու նորանոր ուղիներ, զինաթափման ուղիներ։ Մենք անշեղորեն կմեծացնենք մեր ջանքերը կայուն խաղաղության համար մղվող պայքարում։ (Երկարատև ծափահարություններ)։

## 4. ԽԱՂԱՂՈՒԹՅԱՆ ԵՎ ՄԻՋԱԶԳԱՅԻՆ ՀԱՄԱԳՈՐԾԱԿՑՈՒԹՅԱՆ, ԺՈՂՈՎՈՒՐԴՆԵՐԻ ԱԶԱՏՈՒԹՅԱՆ ԵՎ ԱՆԿԱԽՈՒԹՅԱՆ ՀԱՄԱՐ ՀԵՏԱԳԱ ՊԱՅՔԱՐԻ ԾՐԱԳԻՐԸ

Ընկերնե՛ր։ Գնահատելով մեր երկրի միջազգային դրությունը և համաշխարհային ասպարեզում ստեղծված իրադրությունը, կուսակցության Կենտրոնական կոմիտեն այն հետևության է հանգում, որ ժողովուրդների խաղաղության, ազատության և անկախության գործի համար հետագա պայքարը այժմ պահանջում է լուծել առաջին հերթին հետևյալ հասունացած խնդիրները.

— Անշեղորեն ամրապնդելով եղբայրական սոցիալիստական պետությունների միասնությունը և զարգացնելով նրանց բազմակողմանի համագործակցությունը նոր հասարակարգի կառուցման բնագավառում, մեծացնել նրանց ակտիվ համատեղ ներդրումը խաղաղության ամրապնդման գործում։

— Հասնել սպառազինությունների հարաճուն, խաղաղության համար վտանգավոր մրցավազքի դադարեցման և անցնել զենքի կուտակված պաշարների կրճատման, զինաթափման։ Այդ նպատակով.

ա) հնարավոր ամեն բան անել ստրատեգիական սպառազինությունների սահմանափակման և կրճատման վերաբերյալ ՍՍՀՄ-ի և ԱՄՆ-ի նոր համաձայնագրի նախապատրաստումը ավարտելու համար, միջուկային զենքի փորձարկումների ընդհանուր և լրիվ դադարեցման, քիմիական զենքի արգելման և ոչնչացման, մասսայական ոչնչացման զենքի նոր տեսակների և սիստեմների ստեղծման արգելման, ինչպես նաև ռազմական և թշնամական այլ նպատակներով բնական միջավայրի վրա ներգործության արգելման վերաբերյալ միջազգային պայմանագրեր կնքելու համար.

բ) նոր ջանքեր գործադրել Կենտրոնական Եվրոպայում զինված ուժերի և սպառազինությունների կրճատման շուրջ վարվող բանակցությունների ակտիվացման համար։ Այդ ուղղությամբ առաջին կոնկրետ քայլերի շուրջ պայմանավորվածության հասնելուց հետո հաջորդ տարիներին շարունակել հիշյալ շրջանում ռազմական լարվածության թուլացման գործը.

գ) հասնել այն բանին, որ շատ պետությունների ռազմական ծախսերի ներկայիս մշտական աճին փոխարինելու գա դրանց սիստեմատիկ կրճատման պրակտիկան.

դ) բոլոր միջոցները ձեռնարկել զինաթափման համաշխարհային կոնֆերանսի շուտափույթ հրավիրման համար։

— Խաղաղասեր պետությունների ջանքերը նպատակամղել գոյություն ունեցող ռազմական օջախների վերացմանը և առաջին հերթին Մերձավոր Արևելքի դրության արդարացի ու կայուն կարգավորմանը։ Այդ կարգավորման կապակցությամբ, համապատասխան պետությունները պետք է քննության առնեն Մերձավոր Արևելքում սպառազինությունների մրցավազքի դադարեցմանը նպաստելու հարցը։



— Ամեն բան անել միջազգային լարվածության թուլացումը խորացնելու, այդ թուլացումը պետությունների փոխշահավետ համագործակցության կոնկրետ ձևերի մեջ մարմնավորելու համար։ Ակտիվորեն վարել համաեվրոպական խորհրդակցության եզրափակիչ ակտի լրիվ կենսագործման, Եվրոպայում խաղաղ համագործակցության զարգացման գիծը։ Խաղաղ գոյակցության սկզբունքներին համապատասխան, տարբեր բնագավառներում՝ քաղաքականության մեջ, էկոնոմիկայում, գիտության և կուլտուրայի բնագավառում հետևողականորեն շարունակել տևական փոխշահավետ համագործակցության հարաբերությունների զարգացումը Ամերիկայի Միացյալ Նահանգների, Ֆրանսիայի, ԳՖՀ-ի, Մեծ Բրիտանիայի, Իտալիայի, Կանադայի, ինչպես նաև Ճապոնիայի և մյուս կապիտալիստական պետությունների հետ։

— Գործը տանել դեպի Ասիայի անվտանգության ապահովում՝ այդ մայրցամաքի պետությունների համատեղ ջանքերի հիման վրա։

— Ջգտել միջազգային հարաբերություններում ուժ չգործադրելու համաշխարհային պայմանագրի կնքման։

— Միջազգային կարևորագույն խնդիրներից մեկը համարել գաղութային ճնշման, ժողովուրդների իրավահավասարության և անկախության սահմանափակման սիստեմի բոլոր մնացուկների, գաղութատիրության և ռասիզմի բոլոր օջախների լիակատար վերացումը։

— Հասնել միջազգային առևտրում խտրականության և բոլոր արհեստական խոչընդոտների վերացման, միջազգային տնտեսական հարաբերություններում անիրավահավասարության, թելադրանքի, շահագործման բոլոր դրսևորումների վերացման։

Սրանք են, ընկերնե՛ր, այն գլխավոր խնդիրները, որոնց լուծումը, մեր համոզմամբ, արդի պայմաններում պահանջում են ժողովուրդների խաղաղության և անվտանգության, մարդկության առաջադիմության շահերը։ (Ծափահարություններ)։ Մենք այս առաջարկությունները դիտում ենք որպես կուսակցության XXIV համագումարի առաջ քաշած խաղաղության ծրագրի օրգանական շարունակություն և զարգացում, որպես խաղաղության և միջազգային համագործակցության, ժողովուրդների ազատության և անկախության հետագա պայքարի ծրագիր։ Մենք խնդիրների լուծմանը կնպատակամղենք մեր երկրի արտաքին քաղաքականությունը և այդ բնագավառում կհամագործակցենք մյուս խաղաղասեր պետությունների հետ։

Թույլ տվեք վստահություն հայտնել, որ միջազգային ասպարեզում մեր քաղաքականության վսեմ նպատակները կգտնեն երկրագնդի բոլոր խաղաղասեր, առաջադեմ ուժերի, բոլոր ազնիվ մարդկանց լայն ըմբռնումն ու պաշտպանությունը։ (Բուռն, երկարատև ծափահարություններ)։

## 5. ՍՄԿԿ-Ն ԵՎ ՀԱՄԱՇԽԱՐՀԱՅԻՆ ՀԵՂԱՓՈԽԱԿԱՆ ՊՐՈՑԵՍԸ

Ընկերնե՛ր։ Մենք ապրում ենք արմատական սոցիալական փոփոխությունների դարաշրջանում։ Շարունակում են ամրապնդվել և ընդլայնվել սոցիալիզմի դիրքերը։ Ազգային-ազատագրական շարժման հաղթանակները նոր հորիզոններ են բացում անկախություն նվաճած երկրների առջև։ Ուժեղանում է աշխատավորների դասակարգային պայքարը մոնոպոլիաների ճնշման դեմ, շահագործողական կարգերի դեմ։ Ավելի ու ավելի մեծ չափեր է ընդունում հեղափոխական-դեմոկրատական, հակաիմպերիալիստական շարժումը։ Այս ամենը, ամբողջությամբ վերցված, նշանակում է համաշխարհային հեղափոխական պրոցեսի զարգացում։

Այսպիսին է պատմության հզոր ընթացքը։ Հեղափոխական պրոցեսի մեջ ներգրավվում են նոր սերունդներ և սոցիալական խավեր, նոր կուսակցություններ և կազմակերպություններ։ Տեղի է ունենում հենց այն, ինչի մասին իր ժամանակին գրել է Վ. Ի. Լենինը. «Մարդկանց պատմական ստեղծագործության ընդլայնմանն ու խորացմանը զուգընթաց պետք է աճի նաև բնակչության այն մասսայի չափը, որը պատմական գիտակից գործիչ է»։ (Երկեր, հատ. 2, էջ 678—679)։

Սոցիալիզմի երկրների զարգացում, նրանց հզորության աճ, նրանց վարած միջազգային քաղաքականության բարերար ազդեցության ուժեղացում՝ ահա թե որն է ներկայումս մարդկության սոցիալական առաջադիմության գլխավոր ուղղությունը: Սոցիալիզմի ձգողական ուժը է՛լ ավելի է մեծացել այն ճգնաժամի ֆոնի վրա, որ բռնկել է կապիտալիստական երկրներում:

Մեր կուսակցության XXIV համագումարն ընդգծեց, որ «նոր պայմաններին հարմարվելը չի նշանակում կապիտալիզմի՝ որպես սիստեմի կայունացում: Կապիտալիզմի ընդհանուր ճգնաժամը շարունակում է խորանալ»: Վերջին տարիների իրադարձությունները այդ բանի համոզիչ հաստատումն են:

Հենց այդ տարիներին կապիտալիստական աշխարհում բռնկեց մի տնտեսական ճգնաժամ, որի սրությունը և խորությունը, հենց բուրժուական գործիչների խոստովանությամբ, կարելի է համեմատել միայն 30-ական թվականների սկզբների ճգնաժամի հետ: Այն տարածվեց միաժամանակ համաշխարհային կապիտալիստական տնտեսության բոլոր հիմնական կենտրոնների վրա: Հատկանշական է, որ այդպիսի ուժգնության ճգնաժամը կազմալուծեց հետպատերազմյան ժամանակաշրջանում ստեղծված բարձր զարգացած պետական-մոնոպոլիստական էկոնոմիկան: Կապիտալիզմը ամեն կերպ ձգտում էր ընթանալ, այսպես ասած՝ ժամանակին համաքայլ, կիրառել էկոնոմիկայի կարգավորման տարբեր մեթոդներ: Դա հնարավորություն էր տալիս խթանելու տնտեսական աճը, բայց, ինչպես որ կանխատեսում էին կոմունիստները, չկարողացավ վերացնել կապիտալիզմի հակասությունները:

Կապիտալիստական երկրների մեծ մասում արտադրության խիստ կրճատումը և գործազրկության աճը միահյուսվեցին համաշխարհային կապիտալիստական տնտեսության այնպիսի լուրջ ցնցումների հետ, ինչպիսիք են վալյուտային, էներգետիկ, հումքային ճգնաժամերը: Ճգնաժամային պրոցեսներին հատուկ սրություն տվեց ինֆլյացիան: Հարաճուն ռազմական ծախսերի պատճառով սաստկացող ինֆլյացիան հասավ խաղաղ ժամանակների համար չտեսնված չափերի:

Ուժեղացան միջիմպերիալիստական մրցակցությունը, երկպառակությունները «ընդհանուր շուկայում» և ՆԱՏՕ-ի ներսում: Միջազգային մոնոպոլիաների աճած հզորությունը է՛լ ավելի անողոք դարձրեց մրցակցային պայքարը: Կապիտալիստական երկրների կառավարությունները մեկը մյուսի ետևից փորձեր են ձեռնարկում՝ մեղմելու հակասությունները, համաձայնության գալու ճգնաժամի հաղթահարման համատեղ միջոցառումների շուրջ: Բայց իմպերիալիզմի բնույթը հենց այնպիսին է, որ յուրաքանչյուրը ջանում է առավելություններ ստանալ ուրիշների հաշվին, պարտադրել իր կամքը: Տարաձայնությունները դրսևորվում են նոր ձևերով, հակասությունները բռնկում են նոր ուժով:

Այս ամենը վկայում է, որ ներկայիս ճգնաժամը արտասովոր է: Հիմա ամենքը տեսնում են. հերքված է ռեֆորմիստների և բուրժուական գաղափարախոսների հորինած գլխավոր առասպելներից մեկը՝ այն առասպելը, թե իբր մեր օրերի կապիտալիզմը ընդունակ է ազատվելու ճգնաժամերից: Կապիտալիզմի անկայունությունն ավելի ու ավելի ակներև է դառնում: Կապիտալիզմը «առողջացնելու» և նրա շրջանակներում «համընդհանուր բարօրության հասարակարգ» ստեղծելու խոստումները ակնհայտ ձախողում կրեցին: Ծանր բեռ է ընկել ժողովրդական մասսաների ուսերին: Ապրուստի թանկացումը անողոք կերպով կրճատում է բնակչության ռեալ եկամուտները: Նույնիսկ ՄԱԿ-ի պաշտոնական տվյալներով, զարգացած կապիտալիստական երկրներում 15 միլիոնից ավելի աշխատավորներ դուրս են շպրտված գործարաններից և հիմնարկներից, իրենց ընտանիքների հետ ապրում են նպաստների հաշվին: Բացի դրանից, միլիոնավոր մարդիկ ստիպված են աշխատել ոչ լրիվ օր կամ շաբաթական երկու-երեք օր:

Բանվոր դասակարգը դրան պատասխանում է պրոլետարաբար, ուժեղացնելով պայքարը խոշոր կապիտալի՝ սոցիալական աղետների գլխավոր մեղավորի դեմ: Գործադուլային պայքարը, որին մասնակցում են աշխատավոր բնակչության ամենատարբեր խավերը, հասել է վերջին տասնամյակներում



ամենաբարձր մակարդակին: Մեծացել են բանվոր դասակարգի ուժն ու հեղինակությունը, բարձրացել է նրա՝ որպես ավանգարդի դերը աշխատավորների շահերի, ազգի իսկական շահերի համար մղվող պայքարում: Դեպի ձախ տեղաշարժ է կատարվել արհմիություններում: Մի շարք երկրներում միասնականում են բանվորական և մյուս դեմոկրատական կուսակցությունների գործողությունները, ամրապնդվել են նրանց դիրքերը:

Ուժեղացել է բուրժուական հասարակարգի գաղափարա-քաղաքական ճգնաժամը: Այն կազմալուծում է իշխանության հաստատությունները, բուրժուական քաղաքական կուսակցությունները, խարխլում բարոյական տարրական նորմաները: Կաշառակերությունը ավելի ու ավելի բացահայտ է դառնում նույնիսկ պետական մեքենայի բարձրագույն օղակներում: Շարունակվում է հոգևոր կուլտուրայի անկումը, ավելանում են հանցագործությունները:

Կոմունիստները հեռու են պնդելուց, թե տեղի կունենա կապիտալիզմի «ինքնափլուզում»: Նա դեռ բավական շատ ռեզերվներ ունի: Սակայն վերջին տարիների իրադարձությունները նոր ուժով հաստատում են, որ կապիտալիզմը ապագայից զուրկ հասարակարգ է: (Երկարատև ծափահարություններ):

Անցած հնգամյակում միջազգային ռեակցիայի մի քանի օջախների հուժկու հարվածներ հասցվեցին: Հենց այդ ժամանակաշրջանում հեղափոխություններ տեղի ունեցան Չիլիում և Պորտուգալիայում, կարևոր հաջողության հասան հեղափոխական-ազատագրական ուժերը Պերուում, տապալվեց ռազմա-ֆաշիստական կառավարությունը Հունաստանում, երերաց ֆրանկոյական վարչակարգը Իսպանիայում:

Պորտուգալական հեղափոխությունը վերջ դրեց մեր ժամանակների ֆաշիստական վերջին վարչակարգերից մեկին, հանգեցրեց գաղութային վերջին կայսրության վերացման: Նորից ամբողջ ուժով հաստատվեց. հեղափոխությունը սոցիալական նորացման հզոր լծակ է, այն ձերբազատում է ժողովրդի մեջ թաքնված հսկայական ուժեր: (Ծափահարություններ): Եվ եթե այսօր հակաֆաշիստական հեղափոխության կողմից կյանքի կոչված քաղաքական ուժերի միահյուսումը դեռ խայտաբղետ, երբեմն հակասական պատկեր է ներկայացնում, ապա մի բան միանգամայն պարզ է. Պորտուգալիայի ժողովուրդը հանդես է գալիս երկրում դեմոկրատական զարգացման ամուր հիմքերի ստեղծման օգտին, սոցիալական առաջադիմության օգտին:

Սովետական Միությունը կտրականապես դեմ է ամեն մի միջամտության Պորտուգալիայի ներքին գործերին: Պորտուգալական ժողովուրդը, ինչպես որ ամեն մի ժողովուրդ, իրավունք ունի ընթանալու այն ուղիով, որ ինքն է որոշում: Թույլ տվեք այս ամբիոնից սովետական կոմունիստների, բոլոր սովետական մարդկանց ջերմ համերաշխությունը հայտնել Պորտուգալիայի հեղափոխական ժողովրդին, նրա կոմունիստներին, բոլոր դեմոկրատներին: (Բուռն, Երկարատև ծափահարություններ):

Չիլիի հեղափոխությունը սեփական բուրժուազիայի և օտարերկրյա մոնոպոլիաների ճնշումից և շահագործումից ազատվելու՝ այդ երկրի ժողովրդի կրքոտ ձգտման վառ արտահայտությունը եղավ: Այն գլխավորեցին անբասիր ազնվության տեր մարդիկ՝ մեծ հումանիստներ: Հեղափոխությունը նոր կյանքի կառուցման համար ոտքի հանեց աշխատավորության լայն զանգվածներին: Բայց չիլիական ռեակցիայի դավադրությունը, որը, ինչպես հիմա բոլորին հայտնի է, պլանավորված ու վճարված էր օտարերկրյա իմպերիալիզմի կողմից, հանկարծակիի բերեց հեղափոխությանը: Ռազմա-ֆաշիստական դիկտատուրան երկիրը հեղեղեց արյունով: Սպանվեցին, տանջամահ արվեցին, բանտերը նետվեցին աշխատավոր ժողովրդի հազարավոր լավագույն, ամենահավատարիմ որդիներն ու դուստրերը: Երկրի վրա իջավ տեռորի սև գիշերը: Սակայն չիլիական հեղափոխության ժամանակավոր պարտությունը չի նսեմացնում նրա պատմական ծառայությունները, նրա փորձի նշանակությունը:

Չիլիի ողբերգությունը ամենևին չխախտեց կոմունիստների համոզմունքը հեղափոխության տարբեր ուղիների, այդ թվում՝ խաղաղ ուղու հնարավորության մասին, եթե դրա համար անհրաժեշտ պայմաններ կան: Բայց այդ ողբերգու-

ճառություններ)։ Դա պրոլետարական ինտերնացիոնալիզմի մեծ գործին մեր կուսակցության անշեղ հավատարմության խորհրդանիշը կլինի։ (Երկարատև ծափահարություններ)։

XXIV համագումարի որոշումներին համապատասխան, մենք շարունակում էինք խորացնել կապերը առաջադիմական կուսակցությունների՝ հեղափոխական-դեմոկրատական, ինչպես նաև ձախ սոցիալիստական կուսակցությունների հետ։ Նկատելիորեն ընդլայնվել են կոնտակտները մի շարք երկրների, այդ թվում Ֆինլանդիայի, Բելգիայի, Ճապոնիայի, Մեծ Բրիտանիայի, Ֆրանսիայի սոցիալիստական և սոցիալ-դեմոկրատական կուսակցությունների հետ։ Մենք գնահատում ենք այն, ինչ ձեռք է բերվել այդ բնագավառում, և կաշխատենք այդ ուղղությամբ։

Անկասկած, սոցիալ-դեմոկրատների ռեֆորմիզմի հետ գիտական կոմունիզմի գաղափարական մերձեցման մասին խոսք անգամ լինել չի կարող։ Սոցիալ-դեմոկրատների մեջ դեռ շատ կան այնպիսիները, ովքեր իրենց ամբողջ գործունեությունը կառուցում են հակակոմունիզմի և հակասովետիզմի վրա։ Կան նույնիսկ այնպիսի կուսակցություններ, որտեղ պատժում են կոմունիստների հետ շփվելու համար։ Այդպիսի երևույթների դեմ մենք պայքար կմղենք, որովհետև դրանք ձեռնտու են միայն ռեակցիային։

Սակայն խաղաղության գործի համար իրենց պատասխանատվությունը գիտակցող սոցիալ-դեմոկրատների և առավել ևս սոցիալ-դեմոկրատ բանվորների հետ մեզ կարող են միավորել և միավորում են ժողովուրդների անվտանգության նկատմամբ հոգատարությունը, սպառազինությունների մրցավազքը սանձահարելու, ֆաշիզմին, ռասիզմին ու գաղութատիրությանը հակահարված տալու ձգտումը։ Հենց այս առումով մենք հանդես ենք բերել և հանդես կբերենք նախաձեռնություն ու բարի կամք։ (Ծափահարություններ)։

Մեր ժամանակներում, երբ լարվածության թուլացումը իրողություն է դարձել, թե՛ միջազգային բանվորական շարժման մեջ և թե՛ նրա հակառակորդների շրջանում, հաճախ հարց է ծագում, թե լարվածության թուլացումը ինչպե՞ս է ազդում դասակարգային պայքարի վրա։

Որոշ բուրժուական գործիչներ զարմանք են արտահայտում և աղմուկ են բարձրացնում ուրիշ ժողովուրդների ազատության և առաջադիմության պայքարի հետ սովետական կոմունիստների, սովետական ժողովրդի համերաշխության առթիվ։ Դա կամ միամտություն է կամ էլ, ավելի շուտ, ուղեղների դիտավորյալ մթագնում։ Չէ՞ որ անչափ պարզ է, որ լարվածության թուլացումը, խաղաղ գոյակցությունը վերաբերում են միջպետական հարաբերություններին։ Դա նախ և առաջ նշանակում է, որ երկրների վեճերն ու կոնֆլիկտները չպետք է լուծվեն պատերազմի միջոցով, ուժ գործադրելու կամ ուժով սպառնալու միջոցով։ Լարվածության թուլացումը ամենևին չի վերացնում ու չի կարող վերացնել կամ փոխել դասակարգային պայքարի օրենքները։ Ոչ ոք չի կարող հույս տածել, թե լարվածության թուլացման պայմաններում կոմունիստները կհաշտվեն կապիտալիստական շահագործման հետ կամ մոնոպոլիստները կդառնան հեղափոխության կողմնակիցներ։ Բայց ահա ուրիշ պետությունների գործերին չմիջամտելու սկզբունքի խստիվ պահպանումը, նրանց անկախության ու սուվերենության հարգումը լարվածության թուլացման անհրաժեշտ պայմաններից մեկն են։

Մենք չենք թաքցնում, որ լարվածության թուլացման մեջ տեսնում ենք սոցիալիստական և կոմունիստական խաղաղ շինարարության է՛լ ավելի բարենպաստ պայմաններ ստեղծելու ուղի։ Դա սոսկ հաստատում է, որ սոցիալիզմը և խաղաղությունը անբաժանելի են։ (Ծափահարություններ)։ Եվ երբ դրա համար մեզ հանդիմանում են, դժվար է չարտահայտել այն միտքը, որ նրանք, ովքեր այդ բանն անում են, վստահ չեն, թե կապիտալիզմը ընդունա՞կ է, արդյոք, գոյություն ունենալ, չդիմելով ագրեսիայի և զենքով սպառնալու, ձեռք չբարձրացնելով ուրիշ ժողովուրդների անկախության ու շահերի վրա։

Ինչ վերաբերում «ձախ» բնույթի այն պնդումներին, թե խաղաղ գոյակցությունը իբր նշանակում է համարյա թե «օգնություն կապիտալիզմին», «սո-



ցիալ-քաղաքական ստատուս-քվոյի սառեցում», ապա դրան մենք պատասխանում ենք. ամեն մի հեղափոխություն նախ և առաջ տվյալ հասարակության ներքին զարգացման օրինաչափ արդյունքն է։ Կյանքն ինքն էլ է հերքում «սառեցման» վերաբերյալ հորինվածքները։ Բավական է հիշել այն մեծ հեղափոխական փոփոխությունները, որ աշխարհում կատարվել են վերջին տարիներս։

Այսպես է բանը լարվածության թուլացման և դասակարգային պայքարի հարաբերակցության հարցում։ Հավատարիմ լինելով հեղափոխական գործին, մենք, սովետական կոմունիստներս, պայքարում ենք և կպայքարենք հանուն խաղաղության. դա մեծագույն բարիք է բոլոր ժողովուրդների համար և արդի մարդկության առաջադիմության կարևոր պայմանն է։ (Երկարատև ծափահարություններ)։

* * *

Ընկերնե՛ր։ Հանրագումարի բերելով ասվածը, Կենտրոնական կոմիտեն բոլոր հիմքերն ունի համագումարին զեկուցելու, որ Սովետական Միության միջազգային դրությունը ամուր է, ինչպես երբեք։ Զորրորդ տասնամյակն է, ինչ մենք ապրում ենք խաղաղության պայմաններում։ Սոցիալիզմի դիրքերն ամրապնդվել են։ Լարվածության թուլացումը դարձել է առաջատար միտում։ Ահա կուսակցության միջազգային քաղաքականության գլխավոր արդյունքը։ Այդ արդյունքով սովետական մարդիկ կարող են հպարտանալ։ (Բուռն, երկարատև ծափահարություններ)։

ՍՄԿԿ-ի միջազգային գործունեությունը համաժողովրդական գործ է։ Այն հենվում է երկրի տնտեսական և պաշտպանական հզորության, նրա հոգևոր պոտենցիալի վրա, սովետական ժողովրդի աշխատանքով ամբողջ ստեղծվածի վրա։ Այդ գործունեության հաջողությունները ձեռք են բերվել կուսակցության և պետության շատ ներկայացուցիչների՝ քաղբյուրոյի անդամների և անդամության թեկնածուների, Կենտկոմի քարտուղարների, Կենտկոմի անդամների, Կենտրոնական կոմիտեի, արտգործմինիստրության, արտաքին առևտրի մինիստրության, արտաքին տնտեսական կապերի պետական կոմիտեի և մյուս մինիստրությունների ու գերատեսչությունների մեծ թվով աշխատողների, հանրապետությունների կոմկուսների կենտրոնական կոմիտեների, երկրկոմների և մարզկոմների ղեկավար գործիչների և աշխատողների, քաղկոմների և շրջկոմների, քաղաքի և գյուղի սկզբնական կուսկազմակերպությունների ընկերների փորձի ու գիտելիքների, հոգեկան ուժերի և լարված աշխատանքի շնորհիվ։ Կարծում եմ սխալված չեմ լինի, եթե ասեմ, որ մեր համագումարի պատգամավորների մեծ մասը այսպես թե այնպես աշխատել են նաև միջազգային ոլորտում։ Այդ առումով կարևոր խնդիրներ են կատարում մեր պառլամենտականները, կենտրոնական և տեղական սովետական մարմինները, արհմիությունները, հասարակական կազմակերպությունները, գիտության ու կուլտուրայի գործիչները և, անշուշտ, մամուլը, ռադիոն, հեռուստատեսությունը։ Հազարավոր սովետական մարդիկ են աշխատում արտասահմանում՝ դեսպանությունների և մյուս ներկայացուցչությունների աշխատողներ, երկրաբաններ և շինարարներ, բժիշկներ և ուսուցիչներ, մետալուրգներ և քիմիագործներ, տրանսպորտի աշխատողներ և այլ մասնագետներ։

Կենտրոնական կոմիտեն այդ բոլոր ընկերներին անկեղծ երախտագիտություն է հայտնում իրենց ինտերնացիոնալ պարտքը խորապես ըմբռնելու և բարեխղճորեն կատարելու համար։ (Երկարատև ծափահարություններ)։

Հենվելով ձեռք բերածի վրա, մենք այժմ սահմանում ենք նոր խնդիրներ միջազգային ասպարեզում։ Նախատեսվող ծրագրի հաջողության նկատմամբ մեզ վստահություն է ներշնչում այն, որ կուսակցության գիծը պաշտպանում է ամբողջ սովետական ժողովուրդը։ Սա է մեր քաղաքականության հաջողության գլխավոր երաշխիքը։ Այդ քաղաքականությունը ծառայում է բոլոր ժողովուրդների արմատական շահերին։ Այդ քաղաքականությանն է պատկանում ապագան։ (Բուռն, երկարատև ծափահարություններ)։

## II. ՀՆԳԱՄՅԱԿԻ ԱՐԴՅՈՒՆՔՆԵՐԸ ԵՎ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ՏՆՏԵՍԱԿԱՆ ՔԱՂԱՔԱԿԱՆՈՒԹՅԱՆ ՀԻՄՆԱԿԱՆ ԽՆԴԻՐՆԵՐԸ

*Ընկերնե՛ր: Թույլ տվեք հիմա անցնել կուսակցության ներքին քաղաքականության և առաջին հերթին տնտեսական քաղաքականության հարցերին: Դա է կոմունիզմի համար մղվող պայքարի վճռական տեղամասերից մեկը: Այստեղ են կենտրոնացված կուսակցության և ժողովրդի հիմնական ջանքերը:*

*Այն ընդարձակ նյութը, որը հնարավորություն է տալիս դատելու, թե ինչ է արված հաշվետու ժամանակաշրջանում և ինչ խնդիրներ են դրված երկրի առջև, բովանդակվում է «ՍՍՀՄ ժողովրդական տնտեսության զարգացման 1976—1980 թվականների հիմնական ուղղությունները» ՍՄԿԿ Կենտկոմի նախագծում: Համագումարի պատգամավորները պետք է լսեն նաև ՍՄԿԿ Կենտկոմի քաղբյուրոյի անդամ, ՍՍՀՄ Մինիստրների սովետի նախագահ ընկեր Ա. Ն. Կոսիգինի զեկուցումը: Ուստի Կենտրոնական կոմիտեի հաշվետվության մեջ կարծարծվեն էկոնոմիկայի զարգացման արդյունքներին և նրա հեռանկարներին վերաբերող սոսկ առավել էական հարցերը:*

### 1. ԻՆՆԵՐՈՐԴ ՀՆԳԱՄՅԱԿԻ ԱՐԴՅՈՒՆՔՆԵՐԸ

*Եթե նկատի ունենանք իններորդ հնգամյակի ընդհանուր արդյունքները, ապա գլխավորն այն է, որ սովետական ժողովրդի անձնվեր աշխատանքը, կուսակցության ուղղություն տվող, կազմակերպչական գործունեությունը ապահովեցին էկոնոմիկայի կայուն աճ: Հնգամյակի հիմնական սոցիալ-տնտեսական խնդիրները լուծված են:*

*Հնգամյակի արդյունքները առանձնապես տպավորիչ կդառնան, եթե դրանք գնահատենք այն տեսանկյունից, թե այդ տարիներին որքան է մեծացել երկրի տնտեսական հզորությունը, ինչպիսին է եղել բացարձակ աճը:*

*Այդ տեսակետից իններորդ հնգամյակը իրեն հավասարը չունի:* (Ծափահարություններ): *Մենք հասել ենք արդյունաբերական արտադրանքի, կապիտալ ներդրումների, ժողովրդի բարեկեցությունը բարձրացնելու նոր միջոցառումների իրականացման համար պետության հատկացումների է՛լ ավելի բարձր աճի, քան նախորդ որևէ հնգամյակում: Է՛լ ավելի պատկառազդու դարձավ այն կարևոր արտադրատեսակների ցանկը, որոնց արտադրության ծավալներով Սովետական Միությունը դուրս է եկել աշխարհում առաջին տեղը: Ածխին, երկաթի հանքաքարին, ցեմենտին և մի շարք այլ արտադրանքներին վերջին տարիներս ավելացան պողպատը, նավթը, հանքային պարարտանյութերը:*

*Արդյունաբերական արտադրության ծավալը, ինչպես որ նախատեսված էր ՍՄԿԿ XXIV համագումարի դիրեկտիվներով, հնգամյակում մեծացավ 43 տոկոսով: Դա մեր բանվոր դասակարգի, գիտատեխնիկական մտավորականության, արտադրության հրամանատարների ակնառու հաջողությունն է:* (Ծափահարություններ):

*Հատկապես կկամենայի առանձնացնել կապիտալ շինարարության թափը: Տնտեսության բոլոր ճյուղերի մեջ ներդրվեց ավելի քան 500 միլիարդ ռուբլի, որը հնարավորություն տվեց հիմնական արտադրական ֆոնդերը ավելացնել մեկուկես անգամ: Եվ դա ընդամենը հինգ տարում: Իսկ եթե համեմատենք 1965 թվականի հետ, ապա այդ ֆոնդերը փաստորեն ավելի քան կրկնապատկվել են: Ընդամենը 10 տարում մենք կարողացանք ստեղծել մի նոր այնպիսի տնտեսական պոտենցիալ, ինչպիսին ստեղծվել էր գրեթե կես դարի ընթացքում:* (Ծափահարություններ): *Այսպիսին է զարգացած սոցիալիստական հասարակարգի հզոր առաջընթացը: Այսպիսիք են մեր մեծագործությունների մասշտաբները:* (Ծափահարություններ):

*Հնգամյակի արդյունքների գնահատմանը կարևոր է մոտենալ ևս մի տեսանկյունից. ինչպես են լուծվել կուսակցության առաջադրած առավել խոշոր խնդիրները:*

*Եվ առաջինը, ինչի մասին հարկավոր է ասել, հաջողություններն են ՍՄԿԿ*



*XXIV համագումարի սահմանած գլխավոր խնդրի՝* ժողովրդի կենսամակարդակի բարձրացման *խնդրի լուծման գործում: Երկրի պատմության մեջ չի եղել այնպիսի լայն սոցիալական ծրագիր, որպիսին հաշվետու ժամանակաշրջանում կատարվածն է:*

*Բավական է հիշեցնել, որ նոր սոցիալական միջոցառումների իրականացման համար նույնքան միջոցներ հատկացվեցին, որքան նախորդ երկու հնգամյակներում՝ միասին վերցրած:* (Ծափահարություններ)*: Բնակչության մեկ շնչին ընկնող ռեալ եկամուտները ավելացան գրեթե մեկ քառորդով: Տեղի ունեցող փոփոխությունների մասին պատկերացում տալու համար կբերեմ միայն մեկ փաստ. 1975 թվականին, 1965 թվականի համեմատությամբ, ընտանիքի մեկ անդամի հաշվով ամսական 100 ռուբլի և ավելի եկամուտ ունեցող բնակիչների թիվը ավելացավ ութ ու կես անգամ: Այդ թիվն արտահայտում է տասնյակ միլիոնավոր մարդկանց կենսամակարդակի և ապրելակերպի մեջ կատարված արմատական տեղաշարժը:* (Ծափահարություններ):

*Հնգամյակի տարիներին բարելավվեցին 56 միլիոն մարդու բնակարանային պայմանները: 40 տոկոսով աճեցին սպառման հանրային ֆոնդերից տրվող վճարումներն ու արտոնությունները: Բարձրացվեցին բանվորների, ծառայողների և կոլտնտեսականների կենսաթոշակներն ու նպաստները, ուսանողների կրթաթոշակները: Խոշոր դրական փոփոխություններ կատարվեցին գյուղի աշխատավորների կենսապայմանների մեջ: Այսպիսով, իններորդ հնգամյակի տարիներին հաջողվեց հասնել ժողովրդի կյանքի զգալի բարելավման:*

*Մյուս արմատական պրոբլեմը, որի լուծման գործում մենք նույնպես առաջընթաց քայլ կատարեցինք,* գյուղատնտեսության զարգացումն է, նրա տեխնիկական վերազինումը, կոլտնտեսությունների և սովխոզների էկոնոմիկայի ամրապնդումը:

*Կուսակցությունը, նրա Կենտրոնական կոմիտեն և քաղբյուրոն անդուլ ուշադրություն էին նվիրում գյուղատնտեսությանը: Կյանքը հաստատեց այն կուրսի վիթխարի նշանակությունը, որի սկիզբը դրեց ՍՄԿԿ Կենտկոմի 1965 թվականի մարտյան պլենումը: Գյուղատնտեսության նյութատեխնիկական բազայի ամրապնդումը, գյուղում կատարված կազմակերպչական և քաղաքական մեծ աշխատանքը նպաստեցին հողագործության և անասնապահության վերելքին:*

*Համագումարի պատգամավորները գիտեն, որ անցած հնգամյակում գյուղատնտեսությունը զարգանում էր բնության տարերքի ուժերի դեմ մղվող շատ ծանր պայքարում: Հինգ տարիներից միայն մեկը՝ 1973 թվականն էր լավ, իսկ երկու տարիները՝ 1972 և 1975 թվականները աչքի էին ընկնում չտեսնված երաշտով: Այդպիսի աննպաստ հանգամանքների առաջ մեր գյուղը կանգնած չէր եղել ոչ մի հնգամյակում:*

*Կուսակցության ձեռնարկած վճռական միջոցները, այն լարված, առանց որևէ չափազանցության՝ հերոսական աշխատանքը, որով կոլտնտեսություններում ու սովխոզներում արձագանքեցին Կենտկոմի կոչին, էապես մեղմացրին հրադրությունը: Գյուղատնտեսությունը, ընդհանուր առմամբ, շարունակում էր մեծացնել արտադրությունը: Ութերորդ հնգամյակի համեմատությամբ, ամբողջ արտադրանքի տարեկան միջին ծավալը 13 տոկոսով ավելի բարձր էր: Հացահատիկի տարեկան միջին բերքը ավելացավ 14 միլիոն տոննայով: Ավելացավ մսի, կաթի և անասնապահական մյուս մթերքների արտադրությունը: Չի կարելի լավ խոսքեր չասել մեր բամբակագործների և բրնձաբույծների մասին: Հնգամյակի փաստորեն յուրաքանչյուր տարին նշանավորվեց բամբակի և բրնձի բերքի ստացման գործում ձեռք բերված խոշոր նվաճումներով:* (Ծափահարություններ):

*Իններորդ հնգամյակում քիչ հաջողություններ ձեռք չբերվեցին նաև այնպիսի արմատական պրոբլեմի լուծման գործում, ինչպիսին է* արտադրության արդյունավետության բարձրացումը: *Դրա առավել ընդհանրացված ցուցանիշը աշխատանքի արտադրողականության արագ աճն է: Արդյունաբերության մեջ դրա հաշվին ստացվեց արտադրանքի աճի 84 տոկոսը, շինարարության մեջ՝*

մեծ ուշադրություն հաստոցաշինության, սարքաշինության, էլեկտրատեխնիկական և էլեկտրոնային արդյունաբերության զարգացման նկատմամբ:

Ծանր արդյունաբերության, ինչպես, ի դեպ, ժողովրդական տնտեսության նաև մյուս ճյուղերի զարգացման համար ավելի ու ավելի մեծ նշանակություն է ստանում երկու-երեք հնգամյակների համար նախատեսված այնպիսի խոշոր կոմպլեքսային ծրագրերի մշակումը, ինչպիսին է, օրինակ, վառելիքա-էներգետիկ կոմպլեքսի, մետալուրգիայի, մեքենաշինության առաջատար ճյուղերի զարգացման ծրագիրը:

Միայն տևական հիմքի վրա կարելի է մշակել այդպիսի ծրագրեր, դրանք սերտորեն շաղկապել իրար հետ, ապահովել ռեսուրսներով, կապակցել ժամանակի առումով: Այդպիսի ծրագրերը պետք է, բնականաբար, հաշվի առնեն հայրենական և համաշխարհային գիտության ու տեխնիկայի անընդհատ առաջընթացը, ուրիշ պետությունների հետ տնտեսական համագործակցության հնարավորությունները: Այդ ծրագրերը պետք է նաև նախատեսեն երկրի ներսում արտադրողական ուժերի է՛լ ավելի նպատակահարմար տեղաբաշխում, նոր շրջանների, առանձնապես հումքով ու վառելիքով հարուստ շրջանների յուրացման պահանջմունքները:

Է՛լ ավելի կզարգանա մասնավորապես Արևմտյան Սիբիրի կոմպլեքսը. հեռանկարային առումով նա կարող է ապահովել նավթի ու բնական գազի ընդհանուր-միութենական հաշվեկշռի մոտավորապես կեսը, սինթետիկ կաուչուկի և պլաստմասսայի զգալի մասը:

Նախատեսվում է Արևելյան Սիբիրի արտադրողական ուժերի յուրացման սկզբունքորեն նոր փուլ: Միայն Սայանյան կոմպլեքսը, որին էներգիա կտա աշխարհում ամենահզոր Սայանո—Շուշենսկոյեի հիդրոէլեկտրակայանը, իր կազմի մեջ կունենա մետալուրգիայի և մեքենաշինության բնագավառում մասնագիտացող մի շարք արդյունաբերական հանգույցներ:

Մեծ նշանակություն ունի Բայկալ—Ամուր երկաթուղային մայրուղու կառուցումը: Թվում է, թե հենց վերջերս առաջին շինարարները խախտեցին Տայգայի խուլ վայրերի դարավոր անդորրը: Հիմա աշխատանքը եռում է: Ժամկետից շուտ բացվեց գնացքների աշխատանքային երթևեկությունը ԲԱՄ—Տինդա երկաթգծում, կառուցված է 70 կամուրջ, գցված է մոտավորապես 1.200 կիլոմետր ավտոմոբիլային ճանապարհ, և շինարարները արագացնում են աշխատանքների տեմպերը:

Թույլ տվեք կուսակցության XXV համագումարի անունից ջերմորեն ողջունել ռահվիրաների հերոս կոլեկտիվներին, որոնց աշխատանքը հսկայական բնական հարստությունները ի սպաս է դնում հայրենիքին, նոր կյանք տալիս Սիբիրի, Հյուսիսի, Միջին Ասիայի ու Հեռավոր Արևելքի ընդարձակ շրջաններին: Ընկերնե՛ր, նրանց հաջողություններ մաղթենք իրենց դժվարին, բայց երկրի համար շատ հարկավոր գործերում: (Երկարատև ծափահարություններ):

Ընկերնե՛ր: Երկրի առջև կանգնած տնտեսական և սոցիալական բազմազան խնդիրները հաջողությամբ լուծելու համար այլ ուղի չկա, բացի աշխատանքի արտադրողականության արագ աճից, ամբողջ հանրային արտադրության արդյունավետության խիստ բարձրացումից: Շեշտը արդյունավետության վրա դնելը, և այդ մասին հարկ է կրկին ու կրկին ասել, մեր ամբողջ տնտեսական ստրատեգիայի կարևորագույն բաղկացուցիչ մասն է:

Ութսունական թվականներին այդ խնդրի լուծումը առանձնապես հրամայական է դառնում: Դա կապված է նախ և առաջ աշխատանքային ռեսուրսների պրոբլեմի սրման հետ: Մենք պետք է հույսը դնենք ոչ թե լրացուցիչ աշխատուժի ներգրավման, այլ միմիայն աշխատանքի արտադրողականության բարձրացման վրա: Ձեռքի աշխատանքի բաժնի խիստ կրճատումը, արտադրության կոմպլեքսային մեքենայացումն ու ավտոմատացումը դառնում են տնտեսական աճի անհրաժեշտ պայմանը:

Այնուհետև: Էներգիայի և հումքի բնագավառում երկրի պահանջմունքներն անընդհատ աճում են, իսկ դրանց արտադրությունը ավելի ու ավելի թանկ է նստում: Հետևաբար, կապիտալ ներդրումները չափից ավելի չմեծացնելու հա-



մար հարկավոր է հասնել ռեսուրսների է՛լ ավելի ռացիոնալ օգտագործման, այդ թվում՝ արտադրանքի նյութատարողությունը կրճատելու, է՛լ ավելի էժան և արդյունավետ նյութեր կիրառելու, ինչպես նաև դրանք խնայողաբար ծախսելու հաշվին:

Վերջապես, ժողովրդական տնտեսության զարգացման, քաղաքների և արդյունաբերական կենտրոնների աճի համեմատ, ավելի ու ավելի մեծ միջոցներ կպահանջի շրջակա միջավայրի պահպանումը. միայն ընթացիկ հնգամյակում այդ նպատակների համար հատկացվում է 11 միլիարդ ռուբլի: Եվ այդ գումարը կավելանա: Տնտեսական պոտենցիալի և աշխատավորների բարեկեցության աճի արագ տեմպերի պայմաններում շրջակա միջավայրի պահպանության համար միջոցներ կարող են ստացվել միայն արտադրության արդյունավետության բարձրացման հաշվին:

Չի կարելի հաշվի չառնել նաև այն, որ առաջիկա ժամանակաշրջանում մենք ավելի շատ ռեսուրսներ պետք է հատկացնենք տրանսպորտի, կապի, նյութական մատակարարման սիստեմի՝ այն ամենի արագ զարգացմանը, ինչն անվանում են ինֆրակառուցվածք: Անցյալում այդ ոլորտների մեծ մասին, մասնավորապես ճանապարհային շինարարությանը, պահեստային տնտեսությանը մենք պարզապես չէինք կարողանում պատշաճ ուշադրություն դարձնել: Հիմա դրանով հարկ կլինի զբաղվել և զբաղվել լրջորեն:

Այս ամենը բազում հարցեր է առաջադրում: Հսկայական աշխատանք պետք է կատարվի: Ըստ էության, հարկավոր է հասնել ժողովրդական տնտեսության կառուցվածքի և տեխնիկական մակարդակի մեջ որակական խոր տեղաշարժերի, էապես փոխել նրա բուն դեմքը: Ահա թե գործնականորեն ինչ է նշանակում արդյունավետությունը բարձրացնելու կուսակցության դիրքորոշումը:

Եվ այստեղ մեծ դեր է պատկանում նոր հնգամյակին, իզուր չէ, որ այն անվանել են արդյունավետության և որակի հնգամյակ: Սա է նրա գլխավոր առանձնահատկություններից մեկը:

Մենք, իհարկե, չենք մոռանում նաև քանակը: Տասներորդ հնգամյակի ժամանակաշրջանի սովետական էկոնոմիկան, հիրավի, հսկայական մասշտաբների էկոնոմիկա է: Այսպես, պլանավորվում է 1980 թվականին ազգային եկամուտը հասցնել 457,5 միլիարդ ռուբլու, այսինքն՝ ավելացնել 96 միլիարդ ռուբլով: Արդյունաբերության արտադրանքը կավելանա գրեթե 197 միլիարդ ռուբլով և կանցնի 720 միլիարդ ռուբլուց:

Դրա հետ մեկտեղ մի շարք բնագավառներում աճի տեմպերը նախատեսված են մի փոքր ավելի ցածր, քան իններորդ հնգամյակում էին: Ինչո՞վ է դա բացատրվում: Ինչ-որ չափով այստեղ իրենց արտահայտությունն են գտել նախորդ տարիների դժվարությունները: Բայց դա ժամանակավոր և ամենևին ոչ առաջնակարգ գործոն է: Գլխավորն այն է, որ մենք ջանացել ենք այս հնգամյակում ապահովել ժողովրդական տնտեսության զարգացման ավելի մեծ հավասարակշռվածություն և համամասնականություն, է՛լ ավելի լավ պայմաններ ստեղծել աշխատանքի որակական ցուցանիշների բարձրացման համար: Էկոնոմիկայի բոլոր ճյուղերի, յուրաքանչյուր մինիստրության և ձեռնարկության աշխատանքի կողմնորոշումը դեպի արդյունավետության և որակի վճռական բարձրացում, ընկերնե՛ր, հիմա ամենակարևորն է:

Որակի պրոբլեմը մենք շատ լայն ենք հասկանում: Այն ընդգրկում է տնտեսական գործունեության բոլոր կողմերը: Բարձր որակը աշխատանքի և նյութական ռեսուրսների խնայողություն է, արտահանության հնարավորությունների աճ, իսկ, վերջին հաշվով, հասարակության պահանջմունքների է՛լ ավելի լավ, է՛լ ավելի լրիվ բավարարում: Ահա թե ինչու արտադրանքի որակի բարձրացմանը պետք է նպատակամղվեն պլանավորման և կառավարման ամբողջ մեխանիզմը, նյութական և բարոյական խրախուսման ամբողջ սիստեմը, ինժեներների և կոնստրուկտորների ջանքերը, բանվորների վարպետությունը: Այդ բանին պետք է մշտապես բևեռված լինի կուսակցական կազմակերպությունների, արհմիությունների և կոմերիտմիության ուշադրությունը:

Տասներորդ հնգամյակում արդյունավետության կուրսն իր արտահայտությունն է գտնում այն բանում, որ աշխատանքի արտադրողականության բարձրացումը պետք է ապահովի արդյունաբերական արտադրանքի աճի մոտավորապես 90 տոկոսը, գյուղատնտեսության և շինարարության արտադրանքի ամբողջ աճը։ Ընդհանուր առմամբ, դրա հաշվին կստացվի երկրի ազգային եկամտի ավելացման 85—90 տոկոսը՝ նախորդ հնգամյակի 80 տոկոսի դիմաց։

Վերը նշվածի լույսի ներքո առանձնապես անհանդուրժելի են այնպիսի թերություններ, ինչպիսիք են աշխատաժամանակի կորուստներն ու պարապուրդները, աշխատանքի անհամաչափությունը, աշխատանքային և տեխնոլոգիական թույլ կարգապահությունը, կադրերի մեծ հոսունությունը մի շարք ձեռնարկություններում։ Անհրաժեշտ է է՛լ ավելի ռացիոնալ ու խնայողաբար օգտագործել նյութական և ֆինանսական ռեսուրսները։ Այս հարցերը սրությամբ դրվեցին ՍՄԿԿ Կենտկոմի անցած տարվա դեկտեմբերյան պլենումում։

Ինչքան էլ որ մեծանա մեր հասարակության հարստությունը, խստագույն տնտեսումն ու խնայողությունը մնում են ժողովրդական տնտեսության զարգացման, ժողովրդի բարեկեցության բարձրացման կարևորագույն պայմանը։

Ճիշտ հաշվել և արդյունավետ օգտագործել յուրաքանչյուր ռուբլին, աշխատանքի յուրաքանչյուր ժամը, արտադրանքի յուրաքանչյուր տոննան, մինչև վերջ արմատախիլ անել անտնտեսվարությունն ու թափթփվածությունը՝ սա մեր վսեմ կուսակցական պարտքն է, որովհետև մենք խնայողություն ենք անում հանուն մեզ համար ամենաթանկ բանի՝ հանուն հայրենիքի հարստության և հզորության, մեր ժողովրդի բարեկեցության և բարգավաճման։ (Ծափահարություններ)։

Նախատեսվում է ժողովրդական տնտեսության զարգացման տասներորդ հնգամյակի՝ պլանավորված ցուցանիշները ձեռք բերել կապիտալ ներդրումների աճի ավելի պակաս տեմպերով, քան նախորդ հինգ տարում։ Դրանց ընդհանուր ծավալը չափազանց զգալի կլինի՝ մոտավորապես 630 միլիարդ ռուբլի։ Բայց դրանք իններորդ հնգամյակի 42 տոկոսի դիմաց կավելանան 24—26 տոկոսով։ Մենք նպատակահարմար ենք գտնում դիմել այդ բանին, քանի որ կարևոր ենք համարում շեշտը դնել գործող սարքավորումների, արդեն ստեղծված կարողությունների է՛լ ավելի լրիվ օգտագործման վրա։ Հենց սա է ժողովրդական տնտեսության ինտենսիվացման գիծը։

Արտադրական կարողությունների ոչ լրիվ օգտագործման պատճառով մենք տարեցտարի պակաս ենք ստանում միլիարդավոր ռուբլիների արտադրանք։ Սրանք, այսպես ասած, ուղղակի կորուստներն են։ Բայց մենք, հավանաբար, ավելի քիչ չենք կորցնում այն բանից, որ ամենևին ոչ բոլոր մինիստրություններն ու գերատեսչություններն են ակտիվորեն զարգացնում մասնագիտացումը, միջոցները վերաբաշխում հօգուտ միջճյուղային արտադրությունների, ստեղծում գործիքների ու սարքավորումների, միասնականացված հանգույցների ու դետալների արտադրության հատուկ գործարաններ։ Չափից դուրս փոշիացած է նորոգման բազան։ Այդ միտումները հանգեցնում են բոլոր տեսակի ռեսուրսների զգալի վատնման։

Ստացվում է այսպես. տնտեսական շատ ղեկավարներ ձգտում են համարյա ամեն ինչով իրենք իրենց ապահովել. դա իբր ավելի հուսալի է, քանի որ «ուրիշ» մատակարարողները կարող են գործը տապալել։ Այդ հոգեբանությունը ծնվել է այն բանից, որ մեզ մոտ դեռ շատ օղակներում հաճախ խախտվում է պլանային և պայմանագրային կարգապահությունը։ Բայց դրա դեմ հարկավոր է պայքարել՝ բարձրացնելով կարգապահությունը, այլ ոչ թե խրախուսելով միտումը բնատնտեսության և գերատեսչական սահմանափակվածության նկատմամբ։ Եվ ես համոզված եմ, որ կուսակցությունը, Կենտրոնական կոմիտեն կկարողանան հաղթահարել այդ վնասակար միտումը, անհրաժեշտ ամեն բան կանեն դրա համար։ (Ծափահարություններ)։

Ինչ վերաբերում է կապիտալ շինարարությանը, ապա, եթե խոսենք այսօրվա խնդիրների մասին, կարևոր է ուժերը կենտրոնացնել 1976 թվականին գործարկվելիք օբյեկտներում և հարկավոր է դրանք շարք մտցնել ոչ թե տարվա վերջին, այլ հենց պլանավորված ժամկետներում։ Այդ նույն բանը վերաբերում է նաև նոր գործարկված ձեռնարկություններում նախագծային ցուցանիշների հասնելու ժամկետներին։



Վաղվա օրը է՛լ ավելի արմատական միջոցներ կպահանջի։ Հարկավոր է փոխել բուն մոտեցումը կապիտալ ներդրումների պլանավորման և օգտագործման նկատմամբ, ապահովել գործող արտադրության և նորի կառուցման՝ որպես միասնական ամբողջի պլանավորումը։ Կապիտալ ներդրումները մինիստրություններին ու գերատեսչություններին պետք է հատկացվեն ոչ թե ընդհանրապես, ոչ թե նոր օբյեկտների համար, այլ արտադրանքի պլանավորված աճի համար։ Հարկավոր է նյութական և ֆինանսական ռեսուրսները առաջին հերթին օգտագործել գործող ձեռնարկությունների տեխնիկական վերազինման ու վերակառուցման համար, օգտագործել այնտեղ, որտեղ կարելի է արտադրական կարողությունները ընդլայնել առանց նոր շինարարության կամ ավելի պակաս տեսակարար կապիտալ ծախսումներով։

Կառուցել արագ, խնայողաբար և ժամանակակից տեխնիկական հիմքի վրա՝ ահա կապիտալ շինարարության մեջ բարձր արդյունավետության գումարելիները։ Եվ մենք համոզված ենք, որ շինարարների բազմամիլիոնանոց բանակը կաշխատի հենց այդպես։ (Ծափահարություններ)։

Ընկերնե՛ր։ Տասներորդ հնգամյա պլանը, ինչպես որ բոլոր հնգամյա պլանները, կլինի մեր մեծ սոցիալիստական հայրենիքը կազմող բոլոր հանրապետությունների, ազգերի ու ազգությունների զարգացման ծրագիր։ Սովետական հասարակության տնտեսական և սոցիալական առաջընթացը Ռուսաստանի Ֆեդերացիայի, Ուկրաինայի և Ղազախստանի, Բելոռուսիայի և Մոլդավիայի, Միջին Ասիայի, Մերձբալթիկայի, Անդրկովկասի հանրապետությունների առաջընթացն է։ Ամբողջ երկրի սահմաններում ստեղծված միասնական տնտեսական օրգանիզմը ժողովուրդների բարեկամության ու համագործակցության ամուր նյութական հիմքն է։ (Ծափահարություններ)։

ՍՄԿԿ Կենտկոմը գոհունակությամբ նշում է, որ «ՍՍՀՄ ժողովրդական տնտեսության զարգացման 1976—1980 թվականների հիմնական ուղղությունները» նախագծի քննարկումը ամենուրեք, բոլոր մարզերում, երկրամասերում և հանրապետություններում տեղի էր ունենում քաղաքական ակտիվության մթնոլորտում, գործարար բնույթ էր կրում։ Այդ քննարկումը վերստին ցուցադրեց աշխատավորների կենսական շահագրգռվածությունը կուսակցության առաջադրած խնդիրների լուծմամբ։ Նախագծի քննարկման ժամանակ ելույթ ունեցավ 7,6 միլիոն մարդ, մեկ միլիոնից ավելի առաջարկություններ արվեցին և ցանկություններ հայտնվեցին։ Կենտկոմի քաղբյուրոյի ստեղծած հատուկ հանձնաժողովը քննության կառնի աշխատավորների առաջարկությունները և դրանք հաշվի կառնի հնգամյա պլանի վրա աշխատելիս։

Կոմունիստների, ամբողջ սովետական ժողովրդի կողմից կուսակցության տնտեսական քաղաքականության միահամուռ պաշտպանությունը, նոր հնգամյակի առաջին տարվա առաջին իսկ ամիսներից հարվածային աշխատանքը հերթական հնգամյա պլանի հաջող կատարման կարևոր նախադրյալն են։ Հրատապորեն կենսագործել կուսակցության դիրեկտիվները, անկյունաքար դարձնել հասարակության, պետության, ժողովրդի շահերը՝ այսպես և միմիայն այսպես պետք է աշխատի յուրաքանչյուր կոմունիստ, յուրաքանչյուր ոք, ով սրտանց շահագրգռված է մեր ընդհանուր գործով։ (Երկարատև ծափահարություններ)։

## 3. ԷԿՈՆՈՄԻԿԱՅԻ ԶԱՐԳԱՑՄԱՆ ՀԱՆԳՈՒՑԱՅԻՆ ՊՐՈԲԼԵՄՆԵՐԸ ԱՐԴԻ ՓՈՒԼՈՒՄ

Ընկերնե՛ր։ Տնտեսական քաղաքականության գլխավոր ուղղությունների և առանձնահատկությունների շրջանակներում, որոնց մասին ես խոսեցի, կարելի է առանձնացնել մի շարք կոնկրետ հանգուցային պրոբլեմներ, որոնք արժանի են համագումարի հատուկ քննարկմանը։ Դրանց վրա կանգ կառնեմ ավելի հանգամանորեն։

## ԳԻՏԱՏԵԽՆԻԿԱԿԱՆ ԱՌԱՋԸՆԹԱՑԻ ԱՐԱԳԱՑՈՒՄԸ

Առաջնահերթ խնդիրը մնում է գիտատեխնիկական առաջընթացի արագացումը։ Նրա նշանակությունը, ինչպես հիշում եք, ամբողջ ուժով ընդգծեց ՍՄԿԿ XXIV համագումարը։ Մենք՝ կոմունիստներս, ելնում ենք այն բանից, որ միայն սոցիալիզմի պայմաններում է գիտատեխնիկական հեղաշրջումը ստանում ճիշտ, մարդու և հասարակության շահերին համապատասխանող ուղղություն։

Իր հերթին, միայն գիտության ու տեխնիկայի առավել արագ զարգացման հիման վրա կարող են լուծվել սոցիալական հեղափոխության վերջնական խնդիրները, կարող է կառուցվել կոմունիստական հասարակարգ։

Կատարելով համագումարի որոշումները, մենք հասանք գիտատեխնիկական պոտենցիալի նկատելի աճի։ Է՛լ ավելի ընդլայնվեց գիտական հետազոտությունների ճակատը։ Հետզհետե ավելի մեծ թափ է ստանում հարյուր-հազարավոր գյուտարարների և ռացիոնալիզատորների ստեղծագործությունը։ Գիտաարտադրական շատ միավորումներ, ամբողջ ճյուղեր դուրս են եկել առաջավոր տեխնիկական բնագծեր։ Երկրում արտադրվող սարքավորումների շատ տեսակներ, մեքենաների առանձին տիպեր, մի շարք տեխնոլոգիական պրոցեսներ համապատասխանում են համաշխարհային լավագույն նվաճումներին։

Միևնույն ժամանակ, բնավ էլ ամենուրեք չէ, որ գործն այդպես է։ Դեռևս կան արտադրատեսակներ, որոնք հաշվետվություններում գրանցված են իբրև «նոր», սակայն իրականում նոր են միայն թողարկման ժամկետով, այլ ոչ թե տեխնիկական մակարդակով։ Դա մասնավորապես վերաբերում է մի շարք ձեռնարկությունների արտադրանքին, որոնք պատրաստում են շինարարական ու ճանապարհային մեքենաներ, թեթև և սննդի արդյունաբերության սարքավորումներ, շինանյութեր, ձուլման մեքենաներ և մի քանի այլ արտադրատեսակներ։ Դեռևս շատ բան պետք է անել, որպեսզի գիտության նվաճումները արագորեն մարմնավորվեն ոչ միայն առանձին, թեկուզև ամենափայլուն գիտափորձերում և ցուցանմուշներում, այլև հազարավոր ու հազարավոր նոր արտադրատեսակներում, սկսած եզակի մեքենաներից և վերջացրած այն ամենով, ինչ կապված է մարդկանց աշխատանքի ու կենցաղի պայմանների բարելավման հետ։ Գիտական նոր գաղափարների գործնական արմատավորումը այսօր պակաս կարևոր խնդիր չէ, քան դրանց մշակումը։

Ասվածը, անշուշտ, չի կարելի հասկանալ որպես ֆունդամենտալ գիտության հանդեպ հետաքրքրության նվազում։ Ճիշտ է ասված, չկա ոչինչ ավելի գործնական, քան լավ տեսությունը։ Մենք քաջ գիտենք, որ գիտատեխնիկական առաջընթացի ջրառատ հունը կցամաքի, եթե այն մշտապես չսնուցվի ֆունդամենտալ հետազոտություններով։

Կուսակցության կուրսն այն է, որ այսուհետև էլ մշտապես հոգատարություն ցուցաբերվի մեծ գիտության զարգացման, նրա գլխավոր շտաբի՝ գիտությունների ակադեմիայի նկատմամբ, որի 250-ամյա հոբելյանը լայնորեն նշվեց անցյալ աշնանը։ Այնտեղ է կենտրոնացված մեր գիտության ծաղիկը՝ գիտական դպրոցների և ուղղությունների՝ փորձով իմաստնացած հիմնադիրները և առավել տաղանդավոր երիտասարդ գիտնականները, որոնք նոր ուղիներ են բացում դեպի գիտելիքների բարձունքները։ Կուսակցությունը բարձր է գնահատում ակադեմիայի գործունեությունը և կբարձրացնի նրա՝ իբրև տեսական հետազոտությունների կենտրոնի, երկրում կատարվող ամբողջ գիտական աշխատանքի կոորդինատորի դերը։ (Ծափահարություններ)։

Կուսակցության Կենտրոնական կոմիտեի և կառավարության հանձնարարությամբ ակադեմիական ինստիտուտները, մինիստրությունների ու գերատեսչությունների հետ համատեղ, նախապատրաստել են գիտատեխնիկական առաջընթացի և նրա սոցիալ-տնտեսական հետևանքների 1971—1990 թվականների կոմպլեքսային ծրագրի նախագիծը։ Անհրաժեշտ է շարունակել աշխատանքը ծրագրի վրա. այն կազմում է ընթացիկ և երկարաժամկետ պլանավոր-



ման օրգանական բաղկացուցիչ մասը, այն տալիս է կողմնորոշիչներ, որոնք չիմանալով, անհնար է հաջողությամբ ղեկավարել էկոնոմիկան։

Մենք մեծ նշանակություն ենք տալիս գիտնականների ու մասնագետների աշխատանքին, որոնք աշխատում են ճյուղային հետազոտական ինստիտուտներում, կոնստրուկտորական և նախագծային կազմակերպություններում, անմիջականորեն ապահովելով գիտության ու արտադրության ինտեգրացիան։

Գիտատեխնիկական հեղաշրջման հաջողությունը, էկոնոմիկայի վրա, հասարակության կյանքի բոլոր կողմերի վրա նրա բարերար ազդեցությունը չեն կարող ապահովվել միայն գիտական աշխատողների ջանքերով։ Հետզհետե ավելի մեծ դեր է ստանում հանրային արտադրության բոլոր մասնակիցների, տնտեսական մեխանիզմի բոլոր օղակների ներգրավումը այդ պատմական նշանակություն ունեցող պրոցեսի մեջ։

Գիտության ու տեխնիկայի ասպարեզում կատարվող հեղաշրջումը պահանջում է տնտեսական գործունեության ոճի և մեթոդների արմատական փոփոխություններ, վճռական պայքար քարացածության և հնամոլության դեմ, իսկական հարգանք գիտության հանդեպ, նրա հետ հաշվի նստելու, խորհրդակցելու ունակություն և ցանկություն։ Նա պահանջում է պլանավորումն ու տնտեսական խթանումը կատարելագործել այնպես, որպեսզի պայմաններ ստեղծվեն լիովին նպաստելու նոր գաղափարների շուտափույթ իրականացմանը ամբողջ շղթայով մեկ՝ գյուտարարությունից մինչև մասսայական արտադրություն, հուսալի տնտեսական պատնեշ կանգնեցնելու հնացած արտադրանքի թողարկման առջև։

Այս ամենը խորապես կուսակցական խնդիրներ են։ Եվ մեր ամբողջ տնտեսական շինարարության մեջ այսօր, թերևս, ավելի հրատապ և ավելի պատասխանատու խնդիրներ չկան։

## ԳՅՈՒՂԱՏՆՏԵՍՈՒԹՅԱՆ ՀԵՏԱԳԱ ԶԱՐԳԱՑՈՒՄԸ ՀԱՄԱԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ԽՆԴԻՐ Է

Ընկերնե՛ր։ Մեծ աշխատանք պետք է կատարվի գյուղատնտեսության բնագավառում։ Այստեղ կուսակցությունն առաջադրում է փոխադարձաբար միմյանց հետ կապված երկու նպատակ։ Առաջինը՝ երկրին հուսալիորեն մատակարարել պարենամթերք և գյուղատնտեսական հումք, դրա համար միշտ ունենալ բավարար ռեզերվներ։ Եվ երկրորդ՝ ավելի ու ավելի առաջ գնալ քաղաքի ու գյուղի կյանքի նյութական և կուլտուր-կենցաղային պայմանների մերձեցման ուղիով, որ մեր ծրագրային պահանջն է։

Այդ երկու նպատակներն էլ ունեն սկզբունքային տնտեսական ու քաղաքական նշանակություն։ Դրանք երկուսն էլ կանխորոշում են կուսակցական այն ղեկավար ցուցումների բովանդակությունը, որոնք լենինյան ագրարային քաղաքականության ստեղծագործական զարգացումն են։ Այդ ցուցումները լիովին համապատասխանում են կոլտնտեսային գյուղացիության և բանվոր դասակարգի արմատական շահերին, ստուգվել են ժամանակի ընթացքում, արժանացել համաժողովրդական հավանության։ Դա նշանակում է, որ դրանք ճիշտ են։ (Ծափահարություններ)։ Դա նշանակում է, որ կուսակցությունը այսուհետև էլ կղեկավարվի այդ ցուցումներով։ (Երկարատև ծափահարություններ)։

Մենք ռեալիստներ ենք։ Մենք քաջ գիտենք, որ գյուղատնտեսական արտադրության որակական վերափոխումը պահանջում է ժամանակ, աշխատանք, հսկայական ներդրումներ։ Առավել ևս, որ մի շարք, հիմնականում օբյեկտիվ-պատմական բնույթի պատճառներով մենք միայն վերջին ժամանակներս ենք սկսել մեծ միջոցներ հատկացնել այդ ճյուղի համար։ Սովետական իշխանության բոլոր տարիներին գյուղատնտեսության ստացած երեք հարյուր քսան միլիարդ ռուբլու կապիտալ ներդրումներից 213-ը ընկնում են վերջին երկու հնգամյակին։ (Ծափահարություններ)։

Գյուղատնտեսության մեջ կապիտալ ներդրումները կենտրոնացվել են երեք հիմնական ուղղություններում:

Մեքենայացում: Կոլտնտեսություններն ու սովխոզները վերջին տասը տարում ստացել են ավելի քան երեք միլիոն տրակտոր և 900 հազար հացահատիկի կոմբայն, մեկ միլիոն ութ հարյուր հազար բեռնատար և մասնագիտացված ավտոմեքենաներ, միլիարդավոր ռուբլիների գյուղատնտեսական այլ տեխնիկա. գյուղատնտեսության մեջ կրկնապատկվել է աշխատանքի էներգազինվածությունը:

Մելիորացիա: Շահագործման են հանձնվել 6,4 միլիոն հեկտար ոռոգելի և ավելի քան ութ միլիոն հեկտար ցամաքեցված հողեր: Կատարվել են նաև հողերի բարելավման ուրիշ մեծ աշխատանքներ:

Քիմիացում: 1966-ից մինչև 1975 թվականը պարարտանյութերի օգտագործումը աճել է 2,8 անգամ, բույսերի պաշտպանության քիմիական միջոցներինը՝ ավելի քան երկու անգամ:

Այդ ամենը թույլ է տվել հիմք ստեղծել, ընդ որում՝ ամրակուռ, ծանրակշիռ հիմք՝ գյուղատնտեսությունը էկոնոմիկայի բարձր զարգացած բնագավառ դարձնելու համար: Եվ մենք դրանից արդեն շոշափելի արդյունքներ ենք ստանում: Երկու հնգամյակում հացահատիկային կուլտուրաների բերքատվությունը աճել է 1,4 անգամ: Հանրային տնտեսության մեջ աշխատանքի արտադրողականությունը բարձրացել է 58 տոկոսով: Ամբողջությամբ վերցված, մեկ բնակչի հաշվով, գյուղատնտեսական արտադրանքի արտադրությունն ավելացել է գրեթե մեկ քառորդով, և դա այն դեպքում, երբ երկրի բնակչությունն ավելացել է 23 միլիոնով:

Ընկերնե՛ր: Պատշաճը մատուցելով ձեռք բերվածին, մենք դրա հետ մեկտեղ պարզորոշ տեսնում ենք, որ տեխնիկայով, պարարտանյութերով գյուղատնտեսության հագեցվածության, նրա էներգազինվածության՝ արդի պայմաններում անհրաժեշտ մակարդակն ապահովելու համար դեռևս շատ բան պետք է անել: Ուստի խնդիրն այն է, որ այսուհետև էլ նույնպիսի հաստատակամությամբ կենսագործվի կուսակցության մշակած կուրսը: Մենք հենց այդպես էլ վարվում ենք: (Ծափահարություններ): Նոր հնգամյակում նախատեսվում է գյուղատնտեսության զարգացման համար ծախսել 172 միլիարդ ռուբլի, այսինքն՝ 41 միլիարդով ավելի, քան անցյալ հնգամյակում: Վստահ եմ, որ համագումարի պատգամավորները, ամբողջ կուսակցությունը կպաշտպանեն Կենտրոնական կոմիտեի այս գիծը: (Բուռն, երկարատև ծափահարություններ): Տասներորդ հնգամյակում կոլտնտեսություններն ու սովխոզները կստանան 467 միլիոն տոննա պարարտանյութ՝ իններորդ հնգամյակի 307 միլիոնի փոխարեն: Մեկուկես անգամ կավելանան տեխնիկայի, ընդ որում, առավել արդիական, բարձր արտադրողական ու բազմազան տեխնիկայի մատակարարումները: Դա հնարավորություն կտա հասնել այն բանին, որ հիմնականում ավարտվի կոմպլեքսային մեքենայացումը հացահատիկային տնտեսության մեջ, զգալիորեն բարձրացվի մեքենայացման մակարդակը հողագործության մյուս ճյուղերում, ինչպես նաև անասնապահության մեջ:

Կաճեն մելիորատիվ աշխատանքների ծավալները: Կանխատեսվում է արդեն արվածին՝ երկրում առկա ավելի քան 25 միլիոն հեկտար ոռոգելի և ցամաքեցված հողերին հինգ տարում ավելացնել ևս 9 միլիոն: Մելիորացման աշխատանքը լայնորեն է ծավալվում ոչ սևահողային գոտում: Նոր խոշոր ոռոգիչ սիստեմներ են ստեղծվելու երկրի եվրոպական մասի հարավում և հարավարևելքում, Միջին Ասիայում և Ղազախստանում: Դա շատ մեծ գործ է: Առաջավոր տնտեսությունները ոռոգելի հողերում երեք-չորս անգամ ավելի շատ բերք են աճեցնում, քան անջրդի հողերում: Օգտագործելով նրանց փորձը, պատրաստելով կադրեր, պետք է ամենուրեք հասնել նույնպիսի արդյունքների:

Ինչպես գիտեք, գյուղատնտեսական արտադրանքի արտադրության տարեկան միջին ծավալը նախատեսվում է անցյալ հնգամյակի համեմատությամբ ավելացնել 14—17 տոկոսով: Առավել հրատապ խնդիրը հացահատիկի արտադրության աճն է: Դա գյուղական կոմունիստների, բոլոր կոլտնտեսականների



և սովխոզների աշխատողների աշխատանքի հարվածային տեղամասն է: Հացահատիկի տարեկան միջին բերքը անհրաժեշտ է բարձրացնել առնվազն 35—40 միլիոն տոննայով: Դա մենք ի վիճակի ենք անելու: Ինչպես հայտնի է, անցյալ հնգամյակի առանձին տարիներին մենք արդեն հավաքել ենք այդպիսի բերք: Եթե գործի դրվեն բոլոր ռեզերվները, ապա կարելի է ավելին անել:

Առանձնացնելով հացահատիկի արտադրությունն ավելացնելու խնդիրը, մենք միևնույն ժամանակ չենք կարող թուլացնել ուշադրությունը նաև մյուս գյուղատնտեսական կուլտուրաների նկատմամբ: Պետք է նշանակալի աճի հասնել շաքարի ճակնդեղի, բամբակի, բանջարեղենի, մրգի արտադրության մեջ: Այստեղ «մանրուքներ» չկան, սոխը չի կարելի փոխարինել կարտոֆիլով, իսկ ձեթը՝ տոմատի հյութով, սովետական մարդու սեղանին պետք է լինի ամեն ինչ: Եվ դրա ապահովումը գյուղատնտեսության աշխատողների անմիջական պարտքն է:

Շատ բան է արվելու անասնապահության բնագավառում: Պետք է արագացնել ինտենսիվ մեթոդների արմատավորումը, բարձրացնել մթերատվությունն ու ավելացնել անասունների և թռչունների գլխաքանակը: Կկամենայի վերստին ընդգծել, որ անասնապահության վերելքի հիմքը մնում է կերը: Այդ իսկ պատճառով պետք է խոշոր միջոցառումներ իրականացվեն կերի կուլտուրաների բերքատվությունը բարձրացնելու, մարգագետինները և արոտավայրերը բարելավելու համար: Պետք է արագացնել անցումը կերի կուտակման, վերամշակման և օգտագործման ժամանակակից տեխնոլոգիաներին, ավելի ակտիվորեն զարգացնել համակցված կերի արդյունաբերությունը:

Ընկերնե՛ր: Գյուղատնտեսական արտադրության շեշտակի վերելքի՝ կուսակցության վերցրած կուրսի շրջանակներում, աշխատանքի հիմնական ուղղությունների ամբողջ միանմանությամբ հանդերձ, յուրաքանչյուր հնգամյակ ունի իր առանձնահատկությունները: Ներկայումս, գյուղատնտեսության նյութատեխնիկական բազայի ամրապնդման համեմատ, ամբողջ հասակով մեկ կանգնում է նրա արդյունավետությունը բարձրացնելու ու որակական բոլոր ցուցանիշները բարելավելու խնդիրը:

Դա պահանջում է նախ և առաջ կադրերի պատասխանատվության, նրանց նախաձեռնության ուժեղացում, հոգատարություն այն բանի նկատմամբ, որ պետության կողմից առանձնացվող միջոցները և նյութական ռեսուրսները առավելագույնս փոխհատուցվեն, որ ավելի լավ օգտագործվեն կոլտնտեսությունների և սովխոզների ներքին ռեզերվները: Իսկ դրանք, այդ ռեզերվները, կան:

Այդ է ամենայն համոզչությամբ վկայում մեր հազարավոր առաջավորների աշխատանքը: Նրանցից շատերն այս դահլիճում են: Համագումարի պատգամավորների թվում են գյուղատնտեսական արտադրության՝ ամբողջ երկրում հայտնի այնպիսի վարպետներ, ինչպիսիք են Տերենտի Սեմյոնովիչ Մալցևը, Ալեքսանդր Վասիլևիչ Գիտալովը, Թուրսունոյ Ախունովան, Միխայիլ Իվանովիչ Կլեպիկովը, Լեյդա Պեյպսը, Նիկոլայ Վասիլևիչ Բոչկարյովը և ուրիշներ: Եվ լավ է, որ այդպիսի մարդկանց թիվը ավելի ու ավելի է մեծանում: (Ծափահարություններ): Նրանք գործով են ցույց տալիս, որ լավ և հմուտ աշխատանքը հնարավորություն է ստեղծում նշանակալի արդյունքների հասնել նույնիսկ վատ եղանակի պայմաններում:

Սակայն մենք չպետք է, իրավունք չունենք աչք փակելու այն բանի վրա, որ դեռևս հանդիպում ենք հողի հանդեպ անհարգալից վերաբերմունքի, տեխնիկայի ու պարարտանյութերի վատ օգտագործման դեպքերի: Այդ մասին պետք է ասել համագումարի ամբիոնից, որպեսզի բարձրացվի գյուղատնտեսության բոլոր աշխատողների պատասխանատվության զգացումը:

Մոլդավիայի, Ռուսաստանի Ֆեդերացիայի մի շարք մարզերի, Ուկրաինայի, Բելոռուսիայի և մի քանի այլ հանրապետությունների փորձը վկայում է, որ արտադրության ծավալների արագ աճի, աշխատանքի արտադրողականության էական բարձրացման և ինքնարժեքի իջեցման մեծ հնարավորություններ են ընձեռում արտադրության մասնագիտացումն ու համակենտրոնացումը

միջտնտեսային կոոպերացման և ագրոարդյունաբերական ինտեգրացման բազայի վրա։ Նշանակում է, պետք է ավելի ակտիվորեն վարել այդ կուրսը։ Մեր կազմակերպչական աշխատանքը, պլանավորումը, տնտեսական լծակների օգտագործումը պետք է ըստ ամենայնի նպաստեն այդ առաջադիմական պրոցեսին։

Գյուղատնտեսության արդյունավետության բարձրացումը այնուհետև պահանջում է, որ, զբաղվելով բազմաթիվ կոնկրետ խնդիրներով, մենք ուշադրությունն ու միջոցները կենտրոնացնենք այն խնդիրների վրա, որոնց լուծումը կապահովի առավել արագ և զգալի փոխհատուցում։ Այս ուղղությամբ մտածելու շատ բան կա։ Կկամենայի այս կապակցությամբ անդրադառնալ մի քանի հասունացած հարցերի, որ առաջադրում են կյանքը, հայրենական և համաշխարհային պրակտիկան։

Դրանցից մեկը սելեկցիայի և սերմնաբուծության զարգացումն է։ Մասնագետների գնահատմամբ, լավ, արդիականորեն կազմակերպված սերմնաբուծությունը կարող է բերքատվությունը բարձրացնել առնվազն 20 տոկոսով։ Իսկ դա նշանակում է լրացուցիչ տասնյակ միլիոնավոր տոննա հացահատիկ և գյուղատնտեսական այլ արտադրանք։ Նույնը վերաբերում է կաթնատու և մսատու անասունների, թռչունների նոր տեսակների բուծմանը։ Լավ ցեղական անասունները ոչ միայն ավելացնում են անասնապահական մթերքները, այլև հսկայական չափերով խնայում կերը, ռեալ կերպով կրճատում աշխատանքային ու նյութական ծախսերը գյուղատնտեսության մեջ։

Այսօր, երբ մենք արագ տեմպերով մեծացնում ենք հանքային պարարտանյութերի արտադրությունը, կարևոր է դառնում դրանց ռացիոնալ օգտագործումը։ Դրա համար, պարարտանյութերը փոխադրելիս ու պահպանելիս, կորուստները կրճատելու և դրանց որակի բարելավումն ապահովելու միջոցառումների սիստեմի հետ մեկտեղ, պահանջվում է ճիշտ և հստակ կազմակերպել ագրոքիմիական ծառայությունը, այնպիսի ծառայություն, որը թույլ տար, հաշվի առնելով յուրաքանչյուր տնտեսության առանձնահատկությունները, ստանալ բերքի առավելագույն աճ։

Գյուղը զինվում է մեքենաներով, բարդ սարքավորումներով։ Իսկ դա նշանակում է, որ հրատապ է դառնում նաև գյուղատնտեսության մեջ ինժեներատեխնիկական ծառայությունը բարելավելու խնդիրը։

Վերջին տարիներին քիչ բան չի արված գյուղատնտեսությունը որակյալ կադրերով ամրապնդելու ասպարեզում։ Սակայն միջին և ստորին օղակներում պրոբլեմը մնում է սուր։ Պետք է բարձրացնել բաժանմունքների, բրիգադների, ֆերմաների ղեկավարների պատրաստման մակարդակը։ Մի շարք հանրապետություններում և մարզերում քիչ են մեխանիզատորները, մասսայական այլ պրոֆեսիաների աշխատողները, և դա թանկ է նստում պետության վրա։ Աշխատանքի այդ կարևոր տեղամասը արժանի է ամենասևեռուն ուշադրության։

Այն մակարդակը, որին հասել է գյուղատնտեսությունը, առավել ևս այն, որին կհասնի առաջիկա տարիներին, պահանջում է բարելավել գյուղատնտեսական արտադրության կազմակերպումն ու կառավարումը։ Դա բարդ գործ է, այստեղ պատրաստի դեղատոմսեր չկան։ Սակայն դրանով պետք է զբաղվել, քանի որ մեր ջանքերի հաջողությունը մեծապես կախված է արտադրության և կառավարման ճիշտ կազմակերպումից։

Դա վերաբերում է բուն գյուղատնտեսության ճյուղերին։ Դա վերաբերում է նաև այն ճյուղերի հետ նրա զարգացման միահյուսմանը, որոնք տեխնիկա, պարարտանյութեր, համակցված կեր են մատակարարում գյուղին, շինարարություն կատարում, զբաղվում գյուղատնտեսական մթերքների մթերմամբ, ընդունմամբ, պահպանմամբ ու վերամշակմամբ։ Այստեղ մենք ավելի հաճախակի ենք հանդիպում գերատեսչական մասնատվածության, պլանավորման վրիպումների, որը հանգեցնում է զգալի կորուստների։

Ըստ երևույթին, ժամանակն է բարելավել, և այն էլ լրջորեն բարելավել, գյուղատնտեսության արտադրատնտեսական համագործակցությունը արդյունաբերության այն ճյուղերի հետ, որոնք անմիջականորեն կապված են նրա հետ,



ապահովել միասնական, համապետական մոտեցում ամբողջ ագրոարդյունաբերական կոմպլեքսի զարգացման նկատմամբ։

Ընկերնե՛ր։ Գյուղատնտեսությանը մենք՝ կոմունիզմ կառուցողներս, պետք է մոտենանք ևս մի՝ շրջակա միջավայրի պահպանության տեսանկյունից։ Դա մի պրոբլեմ է, որը միայն արդյունաբերության առջև չէ, որ ծառացած է։ Չէ որ հողագործի և անասնապահի աշխատանքը, ըստ էության, բնության, մեզ շրջապատող բնական միջավայրի օգտագործումն է մարդու կարիքների բավարարման համար։

Սակայն բնությունը կարելի է օգտագործել տարբեր կերպ։ Կարելի է, և մարդկության պատմությունը դրա քիչ օրինակներ չգիտի, իր ետևից թողնել անպտուղ, ամայի, մարդու համար անօգուտ տարածություններ։

Սակայն կարելի է և պետք է, ընկերնե՛ր, վեհացնել բնությունը, բնության օգնել առավել լրիվ բացահայտելու իր կենսական ուժերը։ Կա մի այսպիսի հասարակ, բոլորիս հայտնի արտահայտություն՝ «ծաղկող երկիր»։ Այդպես են անվանում այն հողերը, որտեղ մարդկանց գիտելիքները, փորձը, նրանց կապվածությունը, սերը բնության հանդեպ, հիրավի, հրաշքներ են գործում։ Դա մեր սոցիալիստական ուղին է։ (Երկարատև ծափահարություններ)։ Հետևաբար, մենք պետք է գյուղատնտեսությունը դիտենք իբրև կենդանի բնական հարստությունների պահպանման, մշակման մի հսկայական, մշտապես գործող մեխանիզմ։ Եվ բնությունը մեզ հարյուրապատիկ կփոխհատուցի։

Գյուղատնտեսության հետագա վերելքը կուսակցությունը համարում է կարևորագույն համապետական, համաժողովրդական խնդիր։ Նրա լուծման գործում պետք է արժանի ավանդ ներդնեն էկոնոմիկայի բոլոր ճյուղերը։

Կուսակցության ագրարային քաղաքականությունը կենսագործելու պայքարի առաջավոր բնագծերում գտնվել և գտնվում են դաշտերի ու ֆերմաների աշխատողները։ Հեշտ չէ նրանց աշխատանքը։ Ինչպես ասում են, նրանք աշխատում են արշալույսից մինչև վերջալույս։ Ուստի և մենք բոլորս, կուսակցությունն ու ժողովուրդը, ավելի շատ հիմքեր ունենք խորին շնորհակալություն հայտնելու գյուղի աշխատավորներին։ (Երկարատև ծափահարություններ)։ Թույլ տվե՛ք համագումարի անունից նրանց հաջողություններ մաղթել առաջիկա, հիրավի հսկայական խնդիրների լուծման գործում։ (Երկարատև ծափահարություններ)։

## ԱՎԵԼԱՑՆԵԼ ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ՍՊԱՌՄԱՆ ԱՊՐԱՆՔՆԵՐԻ ԱՐՏԱԴՐՈՒԹՅՈՒՆԸ. ԲԱՐԵԼԱՎԵԼ ԱՌԵՎՏՈՒՐՆ ՈՒ ԲՆԱԿՉՈՒԹՅԱՆ ԿԵՆՑԱՂԱՅԻՆ ՍՊԱՍԱՐԿՈՒՄԸ

Ընկերնե՛ր։ Աշխատողների բարեկեցության բարձրացումը անբաժանելի է բազմապիսի ապրանքների ու ծառայությունների նկատմամբ բնակչության պահանջարկի առավել լրիվ ապահովումից։ Չէ՞ որ ինքնըստինքյան դրամական եկամուտների աճը դեռևս չի նշանակում կենսամակարդակի ռեալ բարձրացում։ Եվ բացի այդ, մի շարք ապրանքների պակասը, ծառայությունների ծավալի սահմանափակությունը նվազեցնում են աշխատանքի նյութական խթանման հնարավորությունները։ Ահա թե ինչու գյուղատնտեսության արագ վերելքի հետ մեկտեղ, կուսակցությունը այնքան հսկայական նշանակություն է տալիս արդյունաբերության այն ճյուղերի զարգացմանը, որոնք կոչվում են «Բ» խումբ։

Եթե այդ ճյուղերի զարգացումը գնահատենք ավանդական, անցյալում ընդունված չափանիշներով, ապա մենք լիակատար իրավունքով կարող ենք խոսել նշանակալի հաջողությունների մասին։ Հինգ տարում կառուցվել է թեթև ու սննդի արդյունաբերության մոտ 1.000 նոր ձեռնարկություն։ Մեծապես ավելացել է պարենային և հատկապես արդյունաբերական ապրանքների վաճառքը բնակչությանը։ Զգալիորեն բարձրացել է նրա ապահովվածությունը կուլտուր-կենցաղային առարկաներով և տնական օգտագործման ապրանքներով։

Այդուհանդերձ, Կենտրոնական կոմիտեն այն կարծիքին է, որ «Բ» խմբի ճյուղերում տիրող վիճակը մեզ չի կարող գոհացնել։ Եվ բանը ոչ միայն այն

է, որ գյուղատնտեսական հումքի պակասության պատճառով, որը հետևանք է անբերրիության, չհաջողվեց թեթև և սննդի արդյունաբերության մի շարք արտադրությունների գծով հասնել պլանավորված ցուցանիշներին։ Մենք պարտավոր ենք է՛լ ավելի լայնությամբ ու սրությամբ դնել հարցը։ Դուք հիշում եք, որ XXIV համագումարում խոսվեց այն մասին, որ անհրաժեշտ է վճռականապես փոխել վերաբերմունքը մարդու ամենօրյա պահանջմունքների բավարարման հետ կապված ամեն ինչի նկատմամբ։

Արմատական տեղաշարժեր ապահովել ինչպես արտադրվող ապրանքների ու սպասարկումների քանակի, այնպես էլ դրանց որակի ասպարեզում։ Հարկ է խոստովանել, որ այս խնդիրը լրիվ չափով լուծել չի հաջողվել։ Մենք դեռ չենք սովորել, ապահովելով ծանր արդյունաբերության զարգացման արագ տեմպեր, առավել արագ զարգացնել նաև «Բ» խումբը և սպասարկման ոլորտը։

Դրա համար պատասխանատու են շատերը։ Պետք է ուղղակի ասել, որ թեթև, սննդի արդյունաբերության և սպասարկման ոլորտի նկատմամբ անբավարար հոգատարություն են ցուցաբերել մեր կենտրոնական պլանային ու տնտեսական մարմինները։ Մենք իրավունք ունենք պատասխան պահանջելու այն մինիստրներից, որոնց վստահված է ղեկավարել այդ ճյուղերը, ինչպես նաև նրանցից, ովքեր չեն կատարել նոր կարողությունները ժամանակին գործարկելու իրենց պարտավորությունները, այդ ճյուղերը չեն ապահովել բարձրորակ սարքավորումներով ու հումքով։ Մի խոսքով, դեռ բնավ էլ ոչ բոլորն են կարողացել մինչև վերջ հաղթահարել այն վերաբերմունքը, երբ ժողովրդական սպառման ապրանքների արտադրությունը համարվում է ինչ-որ երկրորդական, կողմնակի բան։

Դեռևս ոչ բոլորն են հասկացել, որ դա հսկայական քաղաքական ու տնտեսական նշանակություն ունեցող գործ է, որն անմիջականորեն կապված է կուսակցության ծրագրային ցուցումների կատարման հետ։

Այստեղից մենք պետք է հետևություն անենք, շարունակելով ավելացնել կապիտալ ներդրումները «Բ» խմբի ճյուղերի և դրանց սպասարկող արտադրությունների, առևտրի մեջ և ծառայությունների ոլորտում, անհրաժեշտ է բարձրացնել պահանջները նրանց հանդեպ, ովքեր պլանավորում են էկոնոմիկայի այդ հատվածի զարգացումը և ղեկավարում այն։

Կուսակցությունը մտադիր չէ նահանջել իր վերցրած կուրսից։ «Բ» խմբի ճյուղերին ներկայացված ներկայիս պլանային առաջադրանքները մենք դիտում ենք իբրև նվազագույն։ Տարեկան պլանների վրա աշխատելու ընթացքում անհրաժեշտ է ապահովել այդ ճյուղերի աճի արագացումը։ Ժողովրդական սպառման ապրանքների արտադրության մեջ առկա են մեծ ռեզերվներ. այստեղ շատ լայն ասպարեզ կա հանրապետությունների, երկրամասերի և մարզերի, ձեռնարկությունների ու մինիստրությունների նախաձեռնության համար։

Հսկայական ռեզերվներ են թաքնված արտադրանքի որակի և նրա տեսականու բարելավման մեջ։ Անցյալ տարի, օրինակ, արտադրվել է մոտ 700 միլիոն զույգ կաշվե կոշիկ՝ մեկ մարդուն գրեթե երեք զույգ։ Եվ եթե կոշիկի պահանջարկը դեռևս չի բավարարվում, ապա բանը քանակը չէ, այլ այն, որ չի բավականացնում բարձրորակ, նորաձև կոշիկը։ Մոտավորապես նույնն է վիճակը գործվածքեղենի, կարվածքեղենի և արդուզարդի առարկաների, կենցաղային տեխնիկայի, կահույքի և այլ արտադրանքի շատ տեսակների բնագավառում։ Աշխատանքի որակի, սպառողի և նրա պահանջմունքների նկատմամբ ուշադրության պրոբլեմը է՛լ ավելի սուր է առևտրի, հասարակական սննդի, կենցաղային սպասարկման բնագավառում։

Այդ ճյուղերում տիրող իրավիճակը, արտադրության պլանավորման ու կազմակերպման որակը, կադրերի պատրաստման մեթոդներն ու նրանց աշխատանքի պայմանները պետք է միշտ գտնվեն կուսակցական, սովետական ու տնտեսական մարմինների ուշադրության կենտրոնում։

Իսկ մի՞թե կարելի է «Բ» խմբի կայուն վերելք և ապրանքների ու ծառայությունների որակի բարելավում ակնկալել, առանց այդ ոլորտում արմատավորելու արդի գիտության և կոնստրուկտորական մտքի նվաճումները, առանց



ամրապնդելու թեթև և սննդի արդյունաբերության, առևտրի ու կենցաղային սպասարկման տեխնիկական բազան։ Պարզ է, որ չի կարելի։

Դարձյալ կարևոր նշանակություն է ունենալու ժողովրդական սպառման ապրանքների արտադրությունը ծանր արդյունաբերության ձեռնարկություններում։ Եվ կուսակցությունը խիստ հաշիվ կպահանջի այն ղեկավարներից, որոնք զանազան պատրվակներով չեն կատարում այդպիսի ապրանքների արտադրության՝ իրենց համար սահմանված պլանները։

Արդյունաբերության ժողովրդական սպառման ապրանքներ արտադրող ճյուղերում, առևտրի, հասարակական սննդի բնագավառում, սպասարկման ոլորտում աշխատում են մեկուկես միլիոնից ավելի կոմունիստներ և երեք միլիոն կոմերիտականներ, իսկ ընդհանուր առմամբ, զբաղված է մոտ 40 միլիոն մարդ։ Դիմելով նրանց, ուզում եմ ասել. ընկերնե՛ր, ձեզանից, ձեր աշխատանքից է մեծապես կախված սովետական մարդկանց թե՛ բարեկեցությունը, թե՛ տրամադրությունը։ Հիշեցե՛ք այդ։ Աշխատեցե՛ք ավելի լավ և նախաձեռնությամբ, հավասարվեցեք առաջավորներին։ Դրան է կոչում ձե՛զ, ձեզանից դա է սպասում կուսակցությունը։ (Երկարատև ծափահարություններ)։

## ԱՐՏԱՔԻՆ ՏՆՏԵՍԱԿԱՆ ԿԱՊԵՐԻ ԶԱՐԳԱՑՈՒՄԸ

Հանգուցային տնտեսական պրոբլեմների թվում հետզհետե ավելի մեծ նշանակություն է ստանում արտաքին տնտեսական կապերի զարգացումը։ Դա մեր ժողովրդական տնտեսության արագ աճի և աշխարհում տեղի ունեցող խոշոր փոփոխությունների, խաղաղության և լարվածության թուլացման քաղաքականության հաջողությունների անմիջական արդյունքն է։

Մենք արտաքին տնտեսական կապերը համարում ենք արդյունավետ միջոց, որը նպաստում է թե՛ քաղաքական, և թե՛ տնտեսական խնդիրների լուծմանը։ Տնտեսական ինտեգրացման ճանապարհով ամրապնդվում են սոցիալիզմի երկրների համագործակցության հզորությունն ու համախմբվածությունը։ Զարգացող երկրների հետ համագործակցությունը դյուրացնում է նրանց էկոնոմիկայի և հասարակական կյանքի վերակառուցումը առաջադիմական հիմունքներով։

Վերջապես, կապիտալիստական պետությունների հետ տնտեսական ու գիտատեխնիկական կապերը ամրապնդում և ընդլայնում են խաղաղ գոյակցության քաղաքականության նյութական բազան։

Մեր ժամանակի առանձնահատկություններից մեկը աշխատանքի միջազգային բաժանման հարաճուն օգտագործումն է յուրաքանչյուր երկրի զարգացման համար, անկախ նրա հարստությունից և նրա ձեռք բերած տնտեսական մակարդակից։ Մենք, ինչպես որ մյուս պետությունները, ձգտում ենք արտաքին տնտեսական կապերի ընձեռած առավելություններն օգտագործել լրացուցիչ հնարավորություններ մոբիլիզացնելու տնտեսական խնդիրների հաջող լուծման և ժամանակ շահելու՝ արտադրության արդյունավետության բարձրացման և գիտության ու տեխնիկայի առաջընթացի արագացման համար լրացուցիչ հնարավորություններ մոբիլիզացնելու նպատակով։

Գոյություն ունեն արտաքին տնտեսական գործունեության նաև այլ, ավելի լայն կողմեր։ Արդեն այսօր բավականաչափ կարևոր ու հրատապ են այնպիսի համապարփակ պրոբլեմներ, ինչպիսիք են հումքի կամ էներգետիկայի պրոբլեմը, առավել վտանգավոր ու տարածված հիվանդությունների վերացումը և շրջակա միջավայրի պահպանությունը, տիեզերքի յուրացումը և համաշխարհային օվկիանոսի ռեսուրսների օգտագործումը։ Հեռանկարային առումով դրանք հետզհետե ավելի նկատելի ազդեցություն կթողնեն յուրաքանչյուր ժողովրդի կյանքի վրա, միջազգային հարաբերությունների ամբողջ սիստեմի վրա։ Մեր երկիրը, ինչպես որ սոցիալիզմի մյուս երկրները, չի կարող մի կողմ կանգնել ողջ մարդկության շահերը շոշափող այդ պրոբլեմների լուծումից։

Սրանք են, ընկերնե՛ր, քաղաքական ու տնտեսական այն գլխավոր շար-

ժառիթները, որոնք որոշում են արտաքին տնտեսական կապերը զարգացնելու ու խորացնելու կուսակցության կուրսը:

Իններորդ հնգամյակում այս բնագավառում հաջողվել է զգալիորեն ավելի շատ բանի հասնել, քան նախատեսվում էր: Արտաքին առևտրի ծավալը 1970 թվականի 22 միլիարդ ռուբլուց 1975 թվականին հասավ 51 միլիարդի:

Ստացվել են արդյունաբերության տարբեր ճյուղերի, առանձնապես բիմիայի, ավտոմոբիլաշինության, թեթև ու սննդի արդյունաբերության գրեթե երկու հազար օբյեկտների կոմպլեքսային սարքավորումներ: Ամբողջ ներմուծման երկու հինգերորդ մասը կազմել են ժողովրդական սպառման ապրանքները և դրանց արտադրության հումքը:

Արագորեն էր զարգանում նաև մեր արտահանությունը, ընդ որում, ոչ միայն հումքային ապրանքների, այլև շատ տեսակի մեքենաների ու սարքավորումների, ներառյալ ատոմային ռեակտորների, էլեկտրագեներատորների, ինքնաթիռների, հաստոցների արտահանությունը: Սովետական Միությունը մասնակցել է արտասահմանում հարյուրավոր արդյունաբերական օբյեկտների շինարարությանը:

Նախատեսվում է տասներորդ հնգամյակում զգալիորեն ավելացնել արտաքին առևտրական շրջանառությունը: Ես արդեն խոսեցի մեր արտաքին տնտեսական կապերի ամենակարևոր ուղղության՝ սոցիալիզմի երկրների հետ ունեցած կապերի մասին: Այժմ կանդրադառնամ կապիտալիստական աշխարհի հետ տնտեսական հարաբերությունների զարգացման մի քանի ընդհանուր հարցերի:

Դրանցից առաջինը արտաքին առևտրի արդյունավետության բարձրացումն է, կառուցվածքի ու հաշվեկշռի բարելավումը: Հաշվումները ցույց են տալիս, որ հումքի զանազան տեսակներ առաջիկայում էլ կմնան որպես մեր արտահանության նշանակալի հոդվածը: Ուստի և կարևոր է բարձրացնել առավել շահութաբեր հումքային ապրանքների տեսակարար կշիռը, ապահովել վաճառվող հումքի ավելի խոր վերամշակումը: Դրա հետ մեկտեղ, արտահանության մեջ անհրաժեշտ է լրջորեն բարձրացնել մշակվող արդյունաբերության արտադրանքի բաժինը: Դրա համար պետք է ընդլայնել արտաքին շուկաներում պահանջարկ վայելող ապրանքների արտադրությունը, բարձրացնել նրանց մրցունակությունը: Ինչ վերաբերում է ներմուծման քաղաքականությանը, ապա այն է՛լ ավելի մեծ չափով պետք է նպատակամղված լինի էկոնոմիկայի առջև դրված գլխավոր խնդիրների լուծմանը, նրա արդյունավետության բարձրացմանը:

Մյուս խոշոր հարցը արտաքին տնտեսական կապերի նոր ձևերի զարգացումն է, որոնք դուրս են գալիս սովորական առևտրի շրջանակներից, մեծապես ընդլայնում են մեր հնարավորությունները և, որպես կանոն, առավելագույն արդյունք են տալիս: Ես, մասնավորապես, նկատի ունեմ փոխհատուցման համաձայնագրերը, երբ արտասահմանյան ֆիրմաների համագործակցությամբ ստեղծվում են լիովին մեր պետությանը պատկանող ձեռնարկություններ:

Մեզ տրամադրում են վարկեր, սարքավորումներ, լիցենզիաներ, իսկ մենք փոխարենը վճարում ենք արտադրանքի մի մասով, որ արտադրվում է այդ կամ այլ ձեռնարկություններում: Առայժմ այդ կարգի համաձայնագրերը հիմնականում շոշափում են հումք և կիսաֆաբրիկատներ արտադրող ճյուղերը: Սակայն, թերևս, արդեն ժամանակն է ընդլայնել դրանց գործողության ոլորտը, նրա մեջ ներառնել նաև մշակող արդյունաբերությունը, նոր մոտեցումներ որոնել արտադրական համագործակցության ասպարեզում:

Փոխհատուցման համաձայնագրերի լայն զարգացումը պահանջում է բարձրացնել դրանց իրականացմանը մասնակցող բոլոր՝ ոչ միայն արտաքին առևտրական կազմակերպությունների, այլև արդյունաբերական մինիստրությունների ու ձեռնարկությունների, առանձնապես շինարարների, պատասխանատվությունը: Սահմանված ժամկետում կառուցել և յուրացնել նախագծային կարողությունները, տալ բարձրորակ արտադրանք. առանց սրա արտադրական համագործակցության, որևէ օգուտի մասին խոսք անգամ լինել չի կարող:



Մեր արտաքին տնտեսական քաղաքականությունը մենք համաձայնեցնում ենք եղբայրական երկրների հետ: Գործելով Եվրոպայի անվտանգության ու համագործակցության խորհրդակցության եզրափակիչ ակտի ոգով, Տնտեսական փոխօգնության խորհուրդը ՏՓԽ-ի անդամ երկրների կառավարությունների անունից եվրոպական տնտեսական միավորմանը առաջարկել է պաշտոնական հարաբերություններ հաստատել: Եվրոպական տնտեսական միավորման մինիստրական խորհրդին է հանձնվել փոխհարաբերությունների հիմունքների վերաբերյալ համաձայնագրի նախագիծ, որով նախատեսվում է նպաստավոր պայմաններ ստեղծել երկու կազմակերպությունների և նրանց մեջ մտնող երկրների իրավահավասար համագործակցության համար: Մենք պատրաստ ենք դրան:

Արտաքին տնտեսական կապերում ի մի են ձուլվում քաղաքականությունն ու տնտեսությունը, դիվանագիտությունն ու կոմերցիան, արդյունաբերական արտադրությունը և առևտուրը: Հետևաբար, դրանց նկատմամբ մոտեցումը, դրանց կառավարումը պետք է լինեն կոմպլեքսային, որոնք միասնական հանգույցի մեջ միահյուսեն բոլոր գերատեսչությունների ջանքերը, մեր քաղաքական ու տնտեսական շահերը: Այս կարևոր հարցը հենց այդպես է դնում կուսակցության Կենտրոնական կոմիտեն: (Ծափահարություններ):

## ՏՆՏԵՍՈՒԹՅԱՆ ԿԱՌԱՎԱՐՈՒՄԸ. ՏՆՏԵՍԱԿԱՆ ՄԵԽԱՆԻԶՄԸ ԲԱՐՁՐԱՑՆԵԼ ՆՈՐ ՊԱՀԱՆՋՆԵՐԻ ՄԱԿԱՐԴԱԿԻՆ

Ընկերնե՛ր: Վ. Ի. Լենինը նշել է, որ երբ մշակված է ճիշտ քաղաքականություն, ճիշտ գիծ, գործի հաջողությունը կախված է նախ և առաջ կազմակերպումից: Այդպիսի քաղաքականություն, այդպիսի գիծ մենք ունենք: Նշանակում է, վճռական օղակը դառնում է կազմակերպումը, այսինքն տնտեսության կառավարման հետագա կատարելագործումը բառիս ամենալայն իմաստով:

Վերջին տարիներին այդ հարցը բազմիցս քննարկման առարկա է եղել կուսակցության Կենտկոմում և կառավարության մեջ: Ընդունվել են մի շարք որոշումներ, ստացվել են որոշակի գործնական արդյունքներ: Մասնավորապես մշակվել և հաստատվել են արդյունաբերության մի շարք ճյուղերի կառավարման գլխավոր սխեմաները, հետզհետե ստեղծվում են ավելի շատ արտադրական ու արդյունաբերական միավորումներ: Այժմ, երբ քիչ փորձ չի կուտակված, երբ ավելի լավ են նշմարվել ուղղությունները, որոնցով պետք է առաջ շարժվել, մենք կարող ենք և պետք է արագացնենք տնտեսական մեխանիզմի վերակառուցումը: Սա է ընդհանուր խնդիրը: Դա լուծելու համար պետք է մշակել և կենսագործել միջոցառումների մի միասնական սիստեմ, որոնք ընդգրկեին տնտեսության ղեկավարման հիմնական կողմերը:

Անհրաժեշտ է առաջին հերթին ապահովել պլանավորման լուրջ կատարելագործումը: Մեր երկիրը առաջինը թևակոխեց տնտեսության պլանային ղեկավարման ուղին: Այդ բարդ արվեստը մեզանից սովորել և սովորում են տասնյակ այլ պետություններ: Սակայն այժմ մեր առջև ևս ծառացել է պլանային աշխատանքի մակարդակը բարձրացնելու, այն մեր տնտեսության նոր մասշտաբներին ու նկարագրին, ժամանակի նոր պահանջներին համապատասխանեցնելու խնդիրը:

Այս բնագավառում ծառացած խնդիրները ակնբախ են: Դրանք են ուժերի և ռեսուրսների համակենտրոնացումը կարևորագույն համապետական ծրագրերի կատարման վրա, ճյուղային ու տերիտորիալ զարգացման, հեռանկարային և ընթացիկ պրոբլեմների առավել հմուտ զուգորդումը, էկոնոմիկայի հաշվեկշռվածության ապահովումը: Այդ խնդիրները լուծելու համար շատ բան պետք է անեն պլանային ու տնտեսական մարմինները: Այստեղ լայն ասպարեզ կա տնտեսական գիտության գործադրման, ժամանակակից գիտական մեթոդների, այդ թվում տնտեսական-մաթեմատիկական մեթոդների արմատավորման, կառավարման ավտոմատացված սիստեմների օգտագործման համար:

Կառավարչական ու նախ և առաջ պլանային գործունեությունը պետք է

նպատակամղված լինի վերջնական ժողովրդատնտեսական արդյունքներին։ Նման մոտեցումը առանձնապես հրատապ է դառնում էկոնոմիկայի աճի ու բարդացման համեմատ, երբ այդ վերջնական արդյունքները ավելի ու ավելի մեծ չափով են պայմանավորվում միջանկյալ օղակների առատությամբ, ներճյուղային և միջճյուղային կապերի բարդ սիստեմով։ Նման պայմաններում միջանկյալ արդյունքների ետևից ընկնելով, որոնք ինքնըստինքյան դեռևս չեն լուծում խնդիրը, հեշտությամբ կարելի է ձեռքից բաց թողնել գլխավորը՝ վերջնական արդյունքները։ Եվ, ընդհակառակը, պատշաճ ուշադրություն չդարձնելով ինչ-որ միջանկյալ օղակների վրա, կարելի է ձախողել մեծ ջանքերի ու ներդրումների վերջնական, գումարային արդյունքը։ Եվ մենք, ցավոք, ամենուրեք հանդիպում ենք նման իրավիճակների։

Օրինակ, գեղեցիկ և լավորակ հագուստի պահանջարկը բավարարելու համար պետությունը դիմում է մեծ ծախսերի, մեծացնելով բամբակի, բրդի, սինթետիկ թելի արտադրությունը։ Սակայն վերջնական արդյունքը մեծապես արժեզրկվում է հարդարման մեքենաների և ներկանյութերի ցածր որակի, տեքստիլ և կարի արդյունաբերության ետ մնալու պատճառով։ Տարեցտարի երկրում ավելանում է պողպատի ձուլումը։ Սակայն վերջին հաշվով սպառողին պետք է ոչ թե պողպատը, այլ նրանից պատրաստված կոնկրետ իրերը։ Իսկ նա դրանք ստանում է միայն գլանվածքի լայն տեսականու, մետաղի պատշաճ որակի, մեքենաշինության բարձր մակարդակի դեպքում։

Ճիշտ այդպես էլ սև նավթի արտադրության ավելացումը քիչ բան կտա, եթե նրա զգալի մասը այրվի մազութի ձևով, փոխանակ օգտագործվելու վառելիքի ավելի արժեքավոր տեսակներ, նավթաքիմիայի նյութեր ստանալու, արտահանման ռեսուրսներն ավելացնելու համար։

Կարևոր է ոչ միայն հիշել, որ արտադրության վերջնական նպատակն է բավարարել այս կամ այն հասարակական պահանջմունքը, այլև գործնական հետևություններ անել դրանից։ Իսկ դրանցից մեկը, անտարակույս, այն է, որ սպառողին, անկախ նրանից, թե խոսքը հումքի ու նյութերի, մեքենաների ու սարքավորումների, թե ժողովրդական սպառման ապրանքների մասին է, ավելի լայն հնարավորություններ տրվեն արտադրության վրա ազդելու համար։ Այս առումով տնտեսական մեխանիզմի շատ օղակներ կարիք ունեն էական բարելավման։

Աշխատանքի մյուս ուղղությունը տնտեսական խթանների և լծակների՝ տնտեսական հաշվարկի, շահույթի, գնի, պարգևի առավել հմուտ օգտագործումն է։ Այլ խոսքով, կատարելագործման կարիք ունի ցուցանիշների ամբողջ սիստեմը, որոնք ընկած են մինիստրությունների, միավորումների և ձեռնարկությունների գործունեության գնահատման, նախ և առաջ՝ նրանց աշխատանքի արդյունավետության ու որակի հիմքում։ Այդ ցուցանիշները կոչված են միատեղելու աշխատողի շահերը ձեռնարկության շահերի հետ, ձեռնարկության շահերը՝ պետության շահերի հետ, թելադրելով ստանձնել (և, իհարկե, կատարել) լարված պլաններ, խնայել ռեսուրսները, իջեցնել ինքնարժեքը և միևնույն ժամանակ ավելի արագ յուրացնել նոր արտադրատեսակները, թողարկել բարձրորակ և հարկավոր տեսականու արտադրանք։

Պետք է փակել բոլոր սողանցքները, որոնք դեռևս թույլ են տալիս անփույթ տնտեսվարներին համարվել առաջատար, չնայած պայմանագրային պարտավորությունների խախտմանը և արտադրանքի ցածր որակին, ռեզերվների վատ օգտագործմանը։ Դրա համար հարկավոր է նյութական ու բարոյական խրախուսման ներգործուն սիստեմ, որը զուգորդված լինի պլանային ու պայմանագրային կարգապահությունը խախտելու համար կիրառվող խիստ և անկասելի սանկցիաների հետ։

Հաշվի առնելով երկրի առջև ծառացած տնտեսական ու սոցիալական խնդիրները, պետք է բարելավել աշխատանքի վարձատրման և նորմավորման սիստեմը։ Պետք է բարձրացվի այն պետական մարմինների դերը, որոնք անմիջականորեն պատասխանատու են աշխատանքի այդ կարևորագույն տեղամասի համար։



Էկոնոմիկայի ղեկավարումը բարելավելու և՛ս մի շատ կարևոր օղակ. դա կառավարման կազմակերպական կառուցվածքի և մեթոդների կատարելագործումն է։ Մենք պետք է միաժամանակ ամրապնդենք դեմոկրատական ցենտրալիզմի երկու հիմունքները, մի կողմից պետք է զարգացնել ցենտրալիզմը, դրանով իսկ արգելք հարուցելով գերատեսչական և տեղայնական միտումներին, մյուս կողմից պետք է զարգացնել դեմոկրատական հիմունքները, տեղերի նախաձեռնությունը, ղեկավարության վերին էշելոնները ազատել մանր գործերից, ապահովել օպերատիվությունն ու ճկունությունը որոշումներ կայացնելիս։

Կյանքը ստիպում է մտածել նաև շատ այլ հարցերի մասին։ Մենք, օրինակ, իրավամբ բարձր գնահատեցինք այն ամենը, ինչ արված է Արևմտյան Սիբիրում, սակայն գործը առավել լավ կազմակերպելու դեպքում նվաճումները կարող էին է՛լ ավելի պատկառազդու լինել։ Տեսեք, թե ի՞նչ է ստացվում։ Արևմտյան Սիբիրում, կատարելով, ըստ էության, միասնական խնդիր, գործում են չորս գերատեսչական գետային նավատորմներ, բազմաթիվ շինարարական ու մատակարարող կազմակերպություններ։ Մոսկվայում դրանց բոլորի գլխին կանգնած են մի ամբողջ տասնյակ մինիստրություններ ու գերատեսչություններ։ Դայակները, ինչպես տեսնում եք, շատ են։ Բայց և թերությունները էլ քիչ չեն։ Մասնատվածությունը, թույլ կենտրոնացումը հասցնում են չարդարացված ծախսերի ու կորուստների, դանդաղեցնում խոշոր խնդիրների լուծումը։

Այդ կարգի փաստերը հանգեցնում են այն հետևության, որ հասունացել է խոշոր, համապետական միջճյուղային ու տերիտորիալ պրոբլեմների կոմպլեքսային լուծման մեթոդների կատարելագործման հարցը։ Այստեղ պահանջվում են միասնական, կենտրոնացված ծրագրեր, որոնք ընդգրկեն աշխատանքի բոլոր փուլերը՝ նախագծումից մինչև գործնական իրականացումը։

Կարևոր է, որ ամեն դեպքում լինեն կոնկրետ մարմիններ, կոնկրետ մարդիկ, որոնք կրեն ամբողջ պատասխանատվությունը, կոորդինացնեն բոլոր ջանքերը այս կամ այն ծրագրի շրջանակներում։ Լուծում է պահանջում նաև համասեռ ճյուղերի, խմբերի (օրինակ՝ վառելիքաէներգետիկ, տրանսպորտային, գյուղատնտեսական արտադրանքի արտադրության ու վերամշակման և այլն) կառավարման սիստեմ ստեղծելու հարցը։ Զուգահեռաբար պետք է բարձրացնել մինիստրությունների դերն ու պատասխանատվությունը, ավարտել արտադրական միավորումներ ստեղծելու աշխատանքը և բարելավել նրանց գործունեությունը։

Կազմակերպական հարցերի էությունը, պարզ ասած, այն է, որ ամեն ոք, դրա համար ունենալով անհրաժեշտ իրավունքներ և դրա սահմաններում կրելով ամբողջ պատասխանատվությունը, զբաղվեր իր գործով։ Այս տարրական առօրեական կանոնը միևնույն ժամանակ կառավարման գիտության ու պրակտիկայի հիմքերի հիմքն է։ (Ծափահարություններ)։

Կառավարման կատարելագործման ամբողջ աշխատանքում պետք է լիովին հաշվի առնվի ժամանակի գործոնը։ Պլանավորման բնագավառում դա նշանակում է փողի ու ռեսուրսների հետ մեկտեղ ճշգրիտ հաշվի առնել նաև այն ժամկետները, որ կպահանջի զանազան նախագծերի իրականացումը, ընտրել տարբերակներ, որոնք շուտափույթ փոխհատուցում կտան։ Խթանման բնագավառում՝ ժամանակի խնայողության խրախուսում և խստիվ սանկցիաներ՝ նրա վատնողության համար։ Կազմակերպման բնագավառում՝ ավելորդ օղակների և բյուրոկրատական արարողությունների վերացում, որոշումների օպերատիվ ընդունման ապահովում։

Կենտրոնական կոմիտեն դեմ է կառավարման կառուցվածքի տնտեսավարման եղած մեթոդների հապճեպ, չմտածված վերակառուցումներին։ Այստեղ, ինչպես ընդունված է ասել, ոչ թե յոթ, այլ ութ և նույնիսկ տասն անգամ պետք է չափել, հետո միայն կտրել։ Բայց երբ մենք արդեն չափել ենք, երբ հասկացել ենք, որ անընդհատ զարգացող ժողովրդական տնտեսության համար արդեն նեղ են գոյություն ունեցող տնտեսական մեխանիզմի շրջանակները, ապա այն պետք է վճռականորեն կատարելագործել։ (Ծափահարություններ)։

թենական հանրապետությունների մի շարք կոմկուսների կենտկոմների, երկրկոմների ու մարզկոմների, քաղկոմների և շրջկոմների գործունեությունը: Խոսքն այն մասին էր, թե նրանք ինչպե՞ս են իրականացնում տնտեսության կուսակցական ղեկավարումը, ինչպե՞ս են կատարում կազմակերպական-քաղաքական և գաղափարա-դաստիարակչական աշխատանքը: Մանրազնին վերլուծվել է նաև մասսաների աշխատանքային ակտիվության փորձը: Մոսկվայի և Լենինգրադի, Ուկրաինայի և Ղազախստանի, Ուրալի ու Բելոռուսիայի, Միջին Ասիայի և Մերձբալթիկայի, Անդրկովկասի ու Մոլդավիայի կուսակցական կազմակերպությունների, առանձին աշխատավորների և կոլեկտիվների արժեքավոր շատ նախաձեռնություններ հավանության են արժանացել և հանձնարարվել ամբողջ երկրում լայնորեն տարածելու համար:

Հանգամանալի կոլեկտիվ քննարկումից հետո Կենտրոնական կոմիտեի, նրա Քաղբյուրոյի և Քարտուղարության ընդունած որոշումները կուսակցական կազմակերպություններին տալիս էին հստակ կողմնորոշում, պարզ դիրեկտիվներ, որոնք նպաստում էին նրանց աշխատանքի բարելավմանը:

Ընկերնե՛ր:

Մասսաների հետ մեր կուսակցության և նրա Կենտրոնական կոմիտեի կապի կարևոր ձևերից մեկը աշխատավորների նամակներն են: Դրանց թիվը անշեղորեն մեծանում է, արտացոլելով սովետական մարդկանց աճող հասարակական ակտիվությունը: Դրանցում պաշտպանվում է կուսակցության քաղաքականությունը, կարծիքներ հայտնվում կուսակցության և պետության կյանքի բազմաթիվ արմատական հարցերի վերաբերյալ:

Կենտրոնական կոմիտեն սիստեմատիկաբար տեղեկանում է այն ամենին, ինչը ուշագրավ է աշխատավորների նամակներում: Առավել կարևոր առաջարկներն ու կարծիքները քննարկվում են Կենտկոմի Քաղբյուրոյի և Քարտուղարության կողմից, հաշվի առնվում՝ որոշումներ ու օրենքներ մշակելիս: Դրանցից շատերն օգտագործվել են նաև ներկա համագումարի նյութերը պատրաստելիս:

Կուսակցության ընդհանուր գործերում հսկայական նշանակություն ունի հանրապետական, երկրամասային, մարզային, օկրուգային, քաղաքային, շրջանային կուսակցական կազմակերպությունների գործունեությունը: Տարեցտարի ավելի արգասավոր և բովանդակալից է դառնում կուսակցության կարևորագույն օղակների՝ մարզկոմների, երկրկոմների, միութենական հանրապետությունների կոմկուսների կենտկոմների աշխատանքը:

Առանց չափազանցության կարելի է ասել, որ նրանց վրա է ընկած տեղերում կուսակցական քաղաքականության կենսագործման գլխավոր պատասխանատվությունը: Եվ պետք է պատշաճը հատուցել այն հաստատակամությանն ու նպատակասլացությանը, որով նրանք կազմակերպել էին ՍՄԿԿ XXIV համագումարի որոշումների կենսագործումը, հասել մեր տնտեսական ու քաղաքական հնարավորությունների օգտագործմանը՝ հանրային արտադրության բոլոր ճյուղերի վերելքի, նրա արդյունավետության բարձրացման նպատակով: Նրանց մեծ ծառայությունն այն է, որ ըստ ամենայնի նպաստում էին մասսայական ժողովրդական նախաձեռնության զարգացմանը: Հատկանշական է, որ վերջին տարիներին տեղական կուսակցական մարմինները զգալիորեն ավելի շատ համապետական նշանակություն ունեցող խոշոր կոնկրետ առաջարկություններ են արել, քան նախկինում:

Կուսակցական ղեկավարման մակարդակը անմիջականորեն կախված է այն բանից, թե որքան մարտականորեն և նախաձեռնորեն են աշխատում սկզբնական կուսակցական կազմակերպությունները, որոնք կազմում են մեր կուսակցության հիմքը:

Սկզբնական կուսակցական կազմակերպությունները գտնվում են տնտեսական ու կուլտուրական շինարարության առաջավոր գծում, գործում են ժողովրդի բուն խորքերում: Իրենց ամբողջ աշխատանքով նրանք ակտիվորեն նպաստում են կուսակցության քաղաքականության միահյուսմանը մասսաների



կենդանի ստեղծագործության հետ, տնտեսական-քաղաքական և գաղափարա-դաստիարակչական խնդիրների հաջող լուծմանը:

Անցած ժամանակամիջոցում ՍՄԿԿ Կենտկոմը քննարկել է արդյունաբերության և գյուղատնտեսության, շինարարության ձեռնարկությունների, գիտական և ուսումնական հաստատությունների, մինիստրությունների մի շարք կուսակցական կազմակերպությունների աշխատանքի մասին հաշվետվություններ: Ընդունված որոշումներում հատկապես ընդգծվել է, որ ներկայումս սկզբնական կուսակցական կազմակերպությունները կոչված են է՛լ ավելի ակտիվորեն ներգործելու արտադրության արդյունավետության բարձրացման, գիտատեխնիկական առաջադիմության արագացման վրա, պետք է մշտապես հոգան յուրաքանչյուր կոլեկտիվում համերաշխ աշխատանքի և ստեղծագործական որոնման մթնոլորտի ստեղծման մասին, մարդկանց դաստիարակության մասին, նրանց աշխատանքի ու կենցաղի պայմանների բարելավման մասին:

Կուսակցության ղեկավար, մոբիլիզացնող դերը վերացական հասկացություն չէ: Դա ինքը կյանքն է, մեր ամբողջ առօրյա պրակտիկան: Բայց կուսակցության՝ որպես մասսաների կազմակերպչի, ոգեշնչողի դերը առանձնապես վառ է դրսևորվում դժվարին պահերին: Ես արդեն խոսեցի այն մասին, թե որքան բարդ էր 1972 թվականը: Բնական տարերքին մենք այն ժամանակ հակադրեցինք մեր ուժը, մեր կազմակերպվածությունը, մեր կամքը: Կենտրոնական կոմիտեն, տեղական կուսակցական կազմակերպությունները ոտքի հանեցին, ոգեշնչեցին մարդկանց, իսկական ճակատամարտ սկսվեց հացի համար: Կոլտնտեսականների, սովխոզի աշխատողների հետ ուս-ուսի տված այդ ճակատամարտին ակտիվորեն մասնակցեցին քաղաքների բանվորները, սովետական բանակի ռազմիկները, ուսանողները:

Այն ժամանակ ինձ վիճակվեց լինել երկրի այն շրջաններում, որտեղ վճռվում էր բերքի համար մղվող պայքարի հաջողությունը: Որքան դժվար էր մարդկանց գործը: Բայց նրանք ինչպիսի խանդավառությամբ, ինչպիսի եռանդով էին աշխատում: Նրանք արեցին առավելագույն հնարավորը: Ավելին կասեմ. նրանք արեցին այն, ինչը շատերին անհնար էր թվում: Տեսնելով այդ ամենը, չէր կարելի չտոգորվել բարձր հպարտության զգացումով մեր կուսակցության համար, մեր սքանչելի ժողովրդի համար: (Բուռն, երկարատև ծափահարություններ):

Ընկերնե՛ր: Կուսակցական ղեկավարման հաջողության կարևոր պայմանը աշխատաոճի լենինյան ոճն է: Իսկ լենինյան ոճը ստեղծագործական ոճ է, որին խորթ է սուբյեկտիվիզմը, նրան բնորոշ է գիտական մոտեցումը բոլոր հասարակական պրոցեսների նկատմամբ: Նա ենթադրում է բարձր պահանջկոտություն իր և ուրիշների նկատմամբ, բացառում է ինքնագոհությունը, հակադրվում է բյուրոկրատիզմի ու ձևամոլության ամեն տեսակ դրսևորումներին:

Այս կապակցությամբ կկամենայի անդրադառնալ քննադատության և ինքնաքննադատության հարցին: Այս թեմայով մենք լուրջ, սկզբունքային խոսակցություն ենք ունեցել Կենտկոմի պլենումներում: Եվ դա արվել է այն պատճառով, որ լուծվող խնդիրների մասշտաբների ու բարդության աճի համեմատ բոլոր գործերի նկատմամբ խիստ, քննադատական մոտեցումը առանձնահատուկ նշանակություն է ձեռք բերում:

«Տամբովի մարզային կուսակցական կազմակերպությունում քննադատության և ինքնաքննադատության վիճակի մասին» որոշման մեջ Կենտրոնական կոմիտեն բարձրացրեց մի շարք հարցեր, որոնք նշանակություն ունեն ամբողջ կուսակցության համար: Նա նախ և առաջ ուշադրություն հրավիրեց քննադատության ու ինքնաքննադատության մեթոդի բուն էության վրա: Որն է դա: Դա այն է, որ այս կամ այն կազմակերպության, այս կամ այն աշխատողի, գործունեության բոլոր կողմերը ստանան օբյեկտիվ գնահատական: Դա այն է, որ եղած թերությունները համակողմանի վերլուծության ենթարկվեն դրանք վերացնելու նպատակով: Դա այն է, որ թույլ չտրվի լիբերալ վերաբերմունք թերությունների և դրանց համար մեղավորների նկատմամբ: Մարդկանց նկատ-

կանգ չառնել այն հսկայական դերի վրա, որ այդ գործում խաղում է սովետական բանակը: Պատանիները զինվորական ընտանիք են գալիս՝ անցած չլինելով կյանքի դպրոցը:

Բայց նրանք բանակից վերադառնում են արդեն որպես տոկունության ու կարգապահության դպրոցն անցած մարդիկ, որոնք ստացել են տեխնիկական, պրոֆեսիոնալ գիտելիքներ և քաղաքական պատրաստություն: (Ծափահարություններ):

Մեր բանակը դաստիարակված է սոցիալիստական հայրենիքին, խաղաղության ու ինտերնացիոնալիզմի գաղափարներին, ժողովուրդների բարեկամության գաղափարներին խոր նվիրվածության ոգով: (Ծափահարություններ): Սովետական բանակը հենց դրանով է տարբերվում բուրժուական բանակներից: Սովետական մարդիկ հենց դրա համար են սիրում բանակը, հպարտանում նրանով: (Ծափահարություններ):

Մասսաների քաղաքական դաստիարակության հաջողության չափանիշը, իհարկե, կոնկրետ գործերն են: Կոմունիստական գաղափարայնությունը գիտելիքների, համոզմունքների և պրակտիկ գործողության համաձուլվածքն է:

Քաղաքական ու աշխատանքային դաստիարակության սերտ միաձուլման ակնբախ արդյունքը սոցիալիստական մրցության այժմյան վերելքն է:

Ամբողջ երկիրն է հետևում մի այնպիսի հիանալի նախաձեռնության, ինչպիսին է հանդիպական պլանների ընդունման շարժումը: Լայն արձագանք գտավ Մոսկվայի Ի. Ա. Լիխաչովի անվան ավտոմոբիլի գործարանի կոլեկտիվի նախաձեռնությունը՝ գիտության ու տեխնիկայի նվաճումները արտադրության մեջ արմատավորելու գործն արագացնելու, բարձրագույն որակի արտադրանքի թողարկումն ավելացնելու նպատակով: Մոսկվայի «Դինամո» գործարանի, Գորկու և Մինսկի ավտոմոբիլի գործարանների կոլեկտիվները, յուրաքանչյուր աշխատողի անձնական ստեղծագործական պլանների հիման վրա, աշխատանքի արտադրողականության բարձրացման օրինակ ցույց տվեցին:

Իսկ ինչպիսի՜ արձագանք գտավ Լենինգրադի բանվորների կոչը՝ հնգօրյա առաջադրանքը կատարել չորս օրում: Ամենուրեք պաշտպանություն ստացան Գենադի Սմիռնովի, Վլադիմիր Մուրզենկոյի, Միխայիլ Ջիխի բրիգադների նախաձեռնությամբ սկսված մրցությունը՝ մեկ հանքախորշից օրական առնվազն հազար տոննա ածուխ արդյունահանելու համար, Նիկոլայ Զլոբինի շինարարների բրիգադի տնտհաշվարկային կապալի փորձը, անվանի ջուլհակուհիներ Ելենա Ամոսովայի, Ալեվտինա Սմիռնովայի, Վալենտինա Պլետնյովայի, Վալենտինա Բոբկովայի և մյուսների օրինակով աշխատանքի արտադրողականության բարձրացման և որակի բարելավման շարժումը:

Հատկանշական է, որ տասներորդ հնգամյակի առաջին իսկ օրերից համաժողովրդական սոցիալիստական մրցություն ծավալվեց հետևյալ լոզունգով. «Բարձրացնել արտադրության արդյունավետությունն ու աշխատանքի որակը՝ հանուն էկոնոմիկայի և ժողովրդի բարեկեցության հետագա աճի»:

Կարևոր է, ընկերնե՛ր, որ ոչ մի լավ նախաձեռնություն չկորչի: Մի քանի տարի առաջ Գորկու ձեռնարկություններում երևան եկավ հետևյալ կոչը՝ «Ո՛չ մի ետ մնացող մեր կողքին»: Դա ոչ միայն արտադրական լոզունգ էր, այլև բարոյական նորմա: Սկզբում այն լայնորեն արձագանք գտավ, բայց, ցավոք, հիմա որոշ տեղերում մոռացության է տրվել: Իսկ չէ՞ որ ամենուրեք դրա տարածումը կարող է տալ ամբողջ երկրի համար կարևոր արդյունքներ:

Մենք՝ ամենքս ուրախանում ենք, թե ինչպիսի խոր արմատներ են արձակել սոցիալիստական մրցության լենինյան գաղափարները: Մենք հպարտանում ենք, որ մրցության ավանգարդում ընթանում են կոմունիստները: Մրցությունը խոր ազդեցություն է գործում տնտեսական պրակտիկայի վրա, երկրի հասարակական-քաղաքական կյանքի վրա, բարոյական մթնոլորտի վրա: Այսուհետև ես համակողմանիորեն զարգացնել սոցիալիստական մրցությունը, աշխատանքի նկատմամբ կոմունիստական վերաբերմունքի շարժումը՝ այսպիսին է մեր ընդհանուր մարտական լոզունգը:

Կոմունիստական դաստիարակությունը ենթադրում է ժողովրդական կրթության և պրոֆեսիոնալ պատրաստության սիստեմի մշտական կատարելագործում: Դա առանձնապես կարևոր է հիմա, գիտատեխնիկական հեղաշրջման պայմաններում: Դա աշխատանքի համար և, հետևաբար, աշխատանքին մարդու պատրաստությանը այլ բնույթ է տալիս, քան առաջ էր: Մենք այդ տեսակետից շատ բան ենք անում: Բայց այն, ինչ արվել և արվում է, դեռևս չի լուծում այդ բնագավառի բոլոր խնդիրները:

Մասնավորապես, ակնբախ է ամբողջ հանրակրթական սիստեմի և, առաջին հերթին, միջնակարգ դպրոցի հետագա լուրջ կատարելագործման անհրաժեշտությունը: Արդի պայմաններում, երբ մարդուն անհրաժեշտ գիտելիքների ծավալը խիստ և արագորեն աճում է, այլևս անկարելի է գլխավոր շեշտը դնել փաստերի որոշակի քանակության յուրացման վրա: Կարևոր է իրենց գիտելիքները ինքնուրույն համալրելու, գիտական ու քաղաքական ինֆորմացիայի սրընթաց հոսանքի մեջ կողմնորոշվելու ունակության պատվաստումը: Այստեղ մեզ սպասում է մեծ աշխատանք: Իհարկե, զգույշ, լրջախոհ, առանց ավելորդ հեղաբեկման կամ հապճեպ որոշումների: Այստեղ ի՞նչ է պահանջվում: Ըստ երևույթին՝ թե՛ դասատուների պատրաստման բարելավում, թե՛ ուսուցման բուն մեթոդների համապատասխանեցում կյանքի պահանջներին և թե՛ դպրոցի ապահովում ժամանակակից ուսումնական ձեռնարկներով, այդ թվում դիտողական պիտույքներով:

Այստեղ՝ համագումարում, պետք է ասել նաև այն միջոցների մասին, որ կուսակցական կազմակերպությունները ձեռնարկել են աշխատավորների տընտեսագիտական կրթության գործում: Այդպիսի կրթության լայն սիստեմ ստեղծվեց XXIV համագումարի որոշումների հիման վրա: Այդ սիստեմով արդեն անցել է ավելի քան 42 միլիոն մարդ: Ներկայումս սովորում է 36 միլիոն մարդ: Այդ աշխատանքը պետք է շարունակել: Ե՛լ ավելի զարգացնելով տնտեսագիտական կրթությունը, մենք պետք է հոգանք այն մասին, որ դա առավելագույն չափով նպաստի ամենուրեք աշխատանքի կազմակերպման առաջավոր փորձի տարածմանը, գիտության ու տեխնիկայի նվաճումների արմատավորմանը արտադրության մեջ:

Ընկերնե՛ր: Ոչ մի բան այնպես չի վնասում անհատին, ինչպես ակտիվ դիրքը կյանքում, գիտակցական վերաբերմունքը հասարակական պարտքի նկատմամբ, երբ խոսքի և գործի միասնությունը դառնում է վարքագծի ամենօրյա նորմա: Այդպիսի դիրքի մշակումը բարոյական դաստիարակության խնդիրն է:

Ցավոք, դեռևս պատահում են մարդիկ, որոնք գիտեն մեր քաղաքականությունն ու մեր սկզբունքները, բայց միշտ չէ, որ գործնականում հետևում են դրանց, չեն պայքարում դրանց կենսագործման համար, հաշտվողական վերաբերմունք են ցուցաբերում սոցիալիստական համակեցության նորմաների խախտումների նկատմամբ: Խոսքի ու գործի միջև խզումը, ինչ ձևերով էլ որ արտահայտվելիս լինի, վնասում է նաև տնտեսական շինարարությանը, բայց հատկապես՝ բարոյական դաստիարակությանը:

Մենք քիչ արդյունքների չենք հասել սովետական ժողովրդի նյութական բարեկեցության բարելավման գործում: Մենք այսուհետև ես հետևողականորեն կլուծենք այդ խնդիրը: Սակայն անհրաժեշտ է, որ նյութական հնարավորությունների աճը մշտապես ուղեկցվի մարդկանց գաղափարական-բարոյական և կուլտուրական մակարդակի բարձրացումով: Հակառակ դեպքում, մենք կստանանք քաղքենիական, մանրբուրժուական հոգեբանության ռեցիդիվներ: Սա չի կարելի աչքաթող անել:

Մեր հասարակությունը որքան առաջ է գնում իր զարգացման մեջ, այնքան անհանդուրժելի են դառնում բարոյականության սոցիալիստական նորմաներից տակավին հանդիպող շեղումները: Ընչաքաղցությունը, մասնավոր սեփականատիրական միտումները, խուլիգանությունը, բյուրոկրատիզմը և մարդու նկատմամբ անտարբերությունը ներհակ են մեր հասարակության բուն էությանը: Նման երևույթների դեմ մղվող պայքարում անհրաժեշտ է լիովին օգտագործել թե՛ աշխատանքային կոլեկտիվի կարծիքը, թե՛ մամուլի քննադատական

Սովետական գրողները, նկարիչները, կոմպոզիտորները, թատրոնի, կինոյի, հեռուստատեսության աշխատողները, բոլորը, ում տաղանդն ու պրոֆեսիոնալ հմտությունը ծառայում է ժողովրդին, կոմունիզմի գործին, արժանի է խոր շնորհակալության: (Ծափահարություններ): Մենք ուրախ ենք, որ ավելի ու ավելի վստահորեն է կյանք մտնում մեր ստեղծագործական մտավորականության երիտասարդ սերունդը: Իսկական տաղանդը հազվադեպ է պատահում:

Գրականության կամ արվեստի տաղանդավոր ստեղծագործությունը ազգային սեփականություն է: Մենք լավ գիտենք, որ գեղարվեստական խոսքը, գույների երփներանգումները, քարի արտահայտչականությունը, հնչյունների ներդաշնակությունը ոգեշնչում են ժամանակակիցներին և հետնորդներին են հաղորդում մեր սերնդի, մեր ժամանակների, նրա տագնապների ու մեծագործությունների հիշատակը, որ պահվում է մեր սրտերում ու հոգում: (Ծափահարություններ): Ուրեմն մշակույթի գործիչներին, լինեն նրանք կուսակցության անդամ, թե անկուսակցական, մաղթենք կերտելու նոր ստեղծագործություններ, որոնք արժանի լինեն մեր պատմությանը, մեր ներկային ու ապագային, մեր կուսակցությանն ու ժողովրդին: (Ծափահարություններ):

## 3. ՊԵՏԱԿԱՆ ԵՎ ՀԱՍԱՐԱԿԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ԿՈՒՍԱԿՑԱԿԱՆ ՂԵԿԱՎԱՐՄԱՆ ՄԻ ՔԱՆԻ ՀԱՐՑԵՐ

Ընկերնե՛ր: Կոմունիստական շինարարության ասպարեզում մեր ամբողջ աշխատանքի կարևոր ուղղությունը սովետական հասարակության քաղաքական սիստեմի համակողմանի զարգացումն է: Խոսքը վերաբերում է սոցիալիստական պետականության կատարելագործմանը, սոցիալիստական դեմոկրատիայի հետագա զարգացմանը, պետական ու հասարակական կյանքի իրավական հիմքի ամրապնդմանը, հասարակական կազմակերպությունների գործունեության ակտիվացմանը:

Կատարելով այդ աշխատանքը, կուսակցությունը, նրա Կենտրոնական կոմիտեն ելել են և ելնում են այն բանից, որ մեր երկրում կառուցված է զարգացած սոցիալիստական հասարակարգ, որը աստիճանաբար վերաճում է կոմունիստականի, այն բանից, որ մեր պետությունը համաժողովրդական պետություն է, որն արտահայտում է ամբողջ ժողովրդի շահերն ու կամքը: Մենք ելել ենք և ելնում ենք այն բանից, որ մեզ մոտ ստեղծվել է պատմական նոր ընդհանրություն՝ սովետական ժողովուրդը, որի հիմքում ընկած է բանվոր դասակարգի, գյուղացիության, մտավորականության անխախտ դաշինքը՝ բանվոր դասակարգի առաջատար դերի պայմաններում, երկրի բոլոր ազգերի ու ազգությունների բարեկամությունը:

Մենք ձգտել ենք նպաստել պետական մարմինների ու հասարակական կազմակերպությունների սեփական ակտիվության համակողմանի զարգացմանը, ըստ ամենայնի խրախուսել նրանց նախաձեռնությունը:

Պետական շինարարության ասպարեզում կուսակցությունը հիմնական ուշադրությունն է նվիրում սովետների աշխատանքին: XXIV համագումարում արված առաջարկությունների համաձայն, ընդունվեց դեպուտատի ստատուսի մասին օրենքը, որը հստակորեն սահմանեց դեպուտատների իրավունքներն ու պարտականությունները, ինչպես նաև պետական ու հասարակական մարմինների պարտականությունները նրանց հանդեպ: Դա շոշափելի արդյունքներ է տվել: Սովետների դեպուտատների նախաձեռնությամբ այժմ առաջ են քաշվում և լուծվում բազմաթիվ կարևոր հարցեր: Պետք է ուղղակի ասել, որ ընտրողների նակազների հիման վրա դեպուտատների արած առաջարկությունները արտացոլում են մեր ժողովրդի պահանջմունքներն ու կարիքները, մեր ամբողջ կյանքը:

Դուք հիշում եք, որ իր ժամանակին քաղբյուրոյի նախաձեռնությամբ ընդունվեցին օրենքներ, որոնք ընդլայնեցին գյուղական ու ավանային, շրջանային ու քաղաքային սովետների իրավունքները և նյութական հնարավորությունները: Հաշվետու ժամանակաշրջանում կուտակված փորձը ցույց տվեց, որ դա



միանգամայն ճիշտ էր արվել: Տեղական սովետների աշխատանքը, ինչպես ասվում է՝ նոր շունչ առավ: Կարծում եմ, պատգամավորները կպաշտպանեն այն առաջարկությունը, որ ընդունվեն նաև երկրամասային, մարզային և օկրուգային սովետների իրավասությունը սահմանող օրենքներ: (Ծափահարություններ):

Մյուս հարցը, որով մշտապես զբաղվել ենք, մեր օրենսդրության կատարելագործման, սոցիալիստական իրավակարգի ամրապնդման հարցն է: Կուսակցական ու կառավարական մարմինների մշակած և ՍՍՀՄ Գերագույն սովետի, հանրապետությունների գերագույն սովետների ընդունած մեր կյանքի որոշ գլխավոր պրոբլեմների վերաբերյալ օրենքները հսկայական սոցիալ-քաղաքական նշանակություն ունեն: Այս աշխատանքում քիչ դեր չեն խաղացել նաև ՍՍՀՄ Գերագույն սովետի մշտական հանձնաժողովները, որոնց գործունեությունը, առհասարակ, նկատելիորեն ակտիվացել է վերջին տարիներս:

Մենք իրավաբանական նորմերը համապատասխանեցրինք մեր հասարակության ձեռք բերած նոր մակարդակին: Նախապատրաստվեցին կյանքի այնպիսի ոլորտներին վերաբերող օրենսդրություններ, որոնք նախկինում դուրս էին մնում իրավական կարգավորման շրջանակներից, ինչպես օրինակ, շրջակա միջավայրի, այդ թվում՝ ջրամբարների, ընդերքի, օդային տարածության պահպանությունը և այլն: Շատ լավ է, որ այժմ մենք ունենք հիմնավորված իրավաբանական նորմեր, որոնք հնարավորություն են ընձեռում նպատակասլաց կերպով տանելու բնության պաշտպանության աշխատանքը:

Վերջերս քաղբյուրոն համապատասխան մարմիններին հանձնարարեց առաջարկություններ նախապատրաստել աշխատանքային, վարչական իրավունքի և մի քանի այլ օրենքների հետագա կատարելագործման վերաբերյալ, որպեսզի հաշվի առնվեն հասարակական կյանքի նոր երևույթները:

Քիչ անելիքներ չկան նաև տնտեսական գործունեության իրավական կարգավորումը բարելավելու համար: Այդ ոլորտում մեր օրենքները պետք է ավելի արդյունավետորեն ապահովեն արտադրանքի որակի բարձրացման, խնայողության ռեժիմի պահպանման խնդիրների լուծումը: Դրանք պետք է ավելի արդյունավետորեն հակազդեն պետությանը խաբելու, հավելագրումների, սոցիալիստական սեփականության հափշտակման առկա փաստերին, տեղայնության դրսևորումներին և այլն:

Ըստ երևույթին, հասել է ժամանակը, որ հրատարակվի սովետական պետության օրենքների ժողովածու: Դա կնպաստի մեր ամբողջ իրավակարգի կայունության բարձրացմանը: Դա մեր օրենքները է՛լ ավելի մատչելի կդարձնի բոլոր սովետական քաղաքացիների համար: (Ծափահարություններ):

Հասկանալի է, ընկերնե՛ր, որ մենք մշտական ուշադրություն ենք նվիրում և այսուհետև էլ կնվիրենք միլիցիայի, դատախազության, դատարանների, արդարադատության մարմինների գործունեության կատարելագործմանը, որոնք կանգնած են սովետական օրինականության պաշտպանության, սովետական հասարակության շահերի, սովետական քաղաքացիների իրավունքների պաշտպանության դիրքերում: Կուսակցությունը, պետությունը բարձր են գնահատում այդ հիմնարկությունների աշխատողների դժվարին ու պատվավոր աշխատանքը, հոգում են այն մասին, որ դրանց անձնակազմը համալրվի պատրաստված, արժանավոր կադրերով: (Ծափահարություններ):

Իմպերիալիստական պետությունների հետախուզությունների, արտասահմանից զանազան հակասովետական կենտրոնների և թշնամական այլ տարրերի քայքայիչ գործողություններից սովետական հասարակությանը հուսալիորեն պաշտպանում են պետական անվտանգության մարմինները: Նրանց գործունեությունը կառուցվում է միջազգային իրադրությունից և սովետական հասարակության զարգացումից բխող պահանջներին համապատասխան: Մեր չեկիստները պահպանում և զարգացնում են հեղափոխության ասպետի՝ Ֆելիքս Ձերժինսկու, սկզբնավորած ավանդույթները: (Ծափահարություններ):

Իրենց ամբողջ աշխատանքը, որն ընթանում է կուսակցության ղեկավարությամբ և չթուլացող վերահսկողությամբ, պետանվտանգության մարմինների

րը կատարում են՝ ելնելով ժողովրդի ու պետության շահերից, վայելելով աշխատավորական լայն զանգվածների պաշտպանությունը, սահմանադրական նորմաների, սոցիալիստական օրինականության խստիվ պահպանման հիման վրա։ Նախ և առաջ դա է նրանց ուժը, իրենց վրա դրված ֆունկցիաների հաջող կատարման գլխավոր գրավականը։ (Ծափահարություններ)։

Այս բոլոր տարիներին կուսակցությունը պատշաճ ուշադրություն է նվիրել մեր երկրի պաշտպանունակության ամրապնդմանը, և զինված ուժերի կատարելագործմանը։ Մենք կարող ենք համագումարին զեկուցել, որ այդ բնագավառում մենք քիչ բան չենք արել։ Բարելավվել է զինված ուժերի զինումը արդիական զենքով և մարտական տեխնիկայով։ Բարձրացել է անձնակազմի մարտական պատրաստության և գաղափարական կոփման որակը։ Մի խոսքով, ընկերնե՛ր, սովետական ժողովուրդը կարող է վստահ լինել, որ իր ստեղծարար աշխատանքի պտուղները գտնվում են հուսալի պաշտպանության ներքո։ (Երկարատև ծափահարություններ)։

Ոչ ոք չպետք է տարակուսի նաև այն բանում, որ մեր կուսակցությունն ամեն ինչ կանի, որպեսզի Սովետական Միության փառապանծ զինված ուժերի տրամադրության տակ այսուհետև ևս բոլոր անհրաժեշտ միջոցները լինեն իրենց պատասխանատու խնդիրը կատարելու համար, որպեսզի նրանք լինեն սովետական ժողովրդի խաղաղ աշխատանքի պահապանը, ընդհանուր խաղաղության պատվարը։ (Ծափահարություններ)։

Ընկերնե՛ր։ Սովետական քաղաքական սիստեմի անկապտելի մասն են կազմում հասարակական կազմակերպությունները։ Նրանք, ընդհանուր առմամբ, ընդգրկում են երկրի համարյա ամբողջ չափահաս բնակչությանը։ Եվ սա նշանակալի փաստ է։ Մեր հասարակական կազմակերպությունները հասարակության գործերի կառավարմանը քաղաքացիների մասնակցության կարևոր կանալներից մեկն են։

Վերցնենք, օրինակ, մի այնպիսի առավել մասսայական հասարակական կազմակերպություն, ինչպիսիք են արհեստակցական միությունները, որոնց շարքերում կա ավելի քան 107 միլիոն մարդ։ Արհմիությունների աշխատանքը ամենաուղղակի կերպով նպաստում է դեմոկրատիայի իրականացմանը մարդու ստեղծագործական ուժերի ներդրման հիմնական ոլորտում՝ արտադրության մեջ։

Արհմիությունները նախ և առաջ կոչված են պաշտպանելու աշխատավորության իրավունքներն ու շահերը, նրանք պետք է ակտիվորեն զբաղվեն կենցաղային, սոցիալական հարցերով։ Բայց նրանք այդ բնագավառում շատ բան չէին կարողանա անել, եթե չզարգանար արտադրությունը, չամրապնդվեր աշխատանքային կարգապահությունը, եթե չաճեր աշխատանքի արտադրողականությունը, քանի որ մեր արհմիությունները իրենց գործունեության կենտրոնում դնում են աշխատավոր մարդու շահերը, որ նրանց պարտքն է արտադրության վերելքի մասին հոգալը։

Մեր հասարակության կյանքում արհմիություններին մեծ տեղ է հատկացվում։ Եվ դա նրանց շատ բան է պարտավորեցնում։ Արհմիությունների աշխատանքը պետք է այնպես կազմակերպված լինի, որ ավելի լրիվ համապատասխանի նրանց իրավունքներին և նրանց պատասխանատվության աստիճանին։ Վերցնենք մի այսպիսի հարց։ Ինչպես հայտնի է, մեզանում դեռևս մի քանի տարի առաջ վերականգնվեց և կատարելագործվում է արդյունաբերության ճյուղային կառավարումը։ Աճում է արտադրության համակենտրոնացումը, ստեղծվում են արտադրական միավորումներ։ Սակայն այս ամենը դեռ հարկ եղած արտացոլումը չի գտել արհմիությունների աշխատանքում։ Պետք է կարգավորվի արտադրական արհմիությունների կառուցվածքի հարցը, որպեսզի դա լիովին համապատասխանի արդյունաբերության կառավարման կառուցվածքին, ինչպես նաև պետք է կարգավորվեն արտադրական միավորումներում արհմիությունների աշխատանքի ձևերի ու մեթոդների հարցը, ճյուղային արհմիությունների ղեկավար մարմինների իրավունքների հարցը։



Վերջին ժամանակներս ավելի ու ավելի է բարձրանում արհմիութենական կազմակերպությունների դերը կոլտնտեսություններում։ Անհրաժեշտ է նպաստել նրանց մասսայականության մեծացմանը, որը քիչ նշանակություն չի ունենա գյուղատնտեսության վերելքի խնդիրների լուծման և կոլտնտեսականների աշխատանքի ու կենցաղի պայմանների բարելավման համար։ Այս բոլորը շատ լուրջ խնդիրներ են։ Դրանք անհրաժեշտ է լուծել։ (Ծափահարություններ)։

Քիչ ջերմ խոսքեր չեն ասվել և ասվում մեր լենինյան կոմերիտմիության հասցեին։ Եվ սա միանգամայն արդարացված է, ընկերնե՛ր։ Կոմերիտականների 35-միլիոնանոց բանակը կուսակցության հուսալի օգնականն է, նրա անմիջական մարտական ռեզերվը։ Կուսակցությունը ինչպիսի խնդիրներ էլ որ առաջադրի, կոմերիտմիությունը երիտասարդական խանդավառությամբ է պայքարում դրանց լուծման համար։ (Ծափահարություններ)։

Կոմերիտմիությունը քանի՜-քանի՜ լավ նախաձեռնություններ է հանդես բերել անցած հնգամյակում, քանի՜-քանի՜ քաջարի գործեր է նա գլուխ բերել։ Դրանցից են Բայկալ—Ամուր մայրուղու շինարարությունը, հարվածային կոմերիտական կառույցները, որոնց թիվը հնգամյակում կազմում էր 670. այդտեղ աշխատում էին կես միլիոնից ավելի պատանիներ ու աղջիկներ։ Կոմերիտմիությունը ստանձնել է Ռուսաստանի Ֆեդերացիայի ոչ սևահողային գոտու մելիորատիվ և գյուղական շինարարության 1.200 օբյեկտների կառուցման շեֆությունը։ Հապա ուսանողական շինարարական ջոկատնե՞րը։ Մենք բոլորս գիտենք, թե երիտասարդությունը ինչպես է ձգտում դեպի այդ ջոկատները։ Չէ՞ որ դրանք հսկայական գործ են անում։ Իններորդ հնգամյակում նրանք կատարեցին մոտավորապես 5 միլիարդ ռուբլու ծավալով աշխատանքներ։ Անհնար է գերագնահատել դրանց նշանակությունը նաև որպես աշխատանքային դաստիարակության դպրոցի։ (Ծափահարություններ)։

Կոմերիտմիության աշխատանքային փառքը նրա հաստատուն կերպով նվաճած դիրքն է։ Բայց, ընկերնե՛ր, պետք է հասկանալ, որ ինքը՝ կյանքը կոմերիտմիությանը ներկայացնում է ավելի ու ավելի բարձր պահանջներ։ Չէ՞ որ երիտասարդները հենց կոմերիտմիության մեջ են հաղորդակից դառնում կոմունիստական շինարարությանը գիտակցաբար մասնակցելուն։

Այդպիսի գիտակցականության դաստիարակումը այնքան էլ հեշտ չէ, մանավանդ, եթե գործ ունենք երիտասարդների հետ, որոնց բնավորությունը դեռևս չի կայունացել։ Նրանք պատրաստ են անկեղծորեն, ջերմորեն արձագանքելու ամեն մի լավ նախաձեռնության։ Բայց բախվելով ձևամոլության, բախվելով դաստիարակչական աշխատանքի նկատմամբ բյուրոկրատական մոտեցման, մարում է սրտերի հուրը։ Իսկ չէ՞ որ մեր խնդիրն է ոչ միայն պահպանել, այլև բորբոքել այդ հուրը։ Մենք ուզում ենք, որ խանդավառությունը, մտքի աշխուժությունը, երիտասարդական եռանդը մեր մարդկանց մեջ մնան ողջ կյանքում։ Դրան պետք է նպաստի կոմերիտմիությունը, դա պետք է լինի նրա հոգածության կարևոր առարկան։ (Ծափահարություններ)։

Կուսակցությունը հաստատ հավատում է, որ երիտասարդները, կոմերիտականները նոր փառավոր էջեր կգրեն կոմունիստական շինարարության տարեգրության մեջ։

Խոսելով մեր ժողովրդի մեծ գործերի մասին, չի կարելի չասել, թե դրանցում ինչ դեր է խաղում սովետական կինը։ Մեր հայրենիքը իր նվաճումներով և հաղթանակներով մեծապես պարտական է կնոջ անձնվիրությանն ու տաղանդին։ Եվ այն կարևոր խնդիրների լուծման մեջ, որ մեր համագումարը ապագայի համար կկանխանշի հասարակական կյանքի բոլոր ոլորտներում, անպայման մեծ ավանդ կներդնեն նաև մեր պանծալի կանայք։ (Ծափահարություններ)։ Կուսակցությունը իր պարտքն է համարում մշտապես հոգալ կնոջ մասին, նրա դրությունը բարելավելու մասին՝ որպես աշխատանքային պրոցեսի մասնակցի, որպես երեխաների մոր և դաստիարակի և տան տնտեսուհու։

Ընկերնե՛ր։ Արտասահմանյան քննադատները հաճախ խեղաթյուրում են օրինականության և իրավակարգի ամրապնդման նպատակով սովետական պե-

տության կողմից ձեռնարկվող միջոցների իմաստը։ Քաղաքացիների կարգապահության և հասարակության հանդեպ նրանց պատասխանատվության ամրապնդման շուրջ ամեն մի խոսակցություն այնտեղ պատկերվում է որպես դեմոկրատիայի խախտում։ Ի՞նչ կարելի է ասել այս առթիվ։

Այո՛, հոգալով անհատի համակողմանի զարգացման, քաղաքացիների իրավունքների մասին, մենք դրա հետ մեկտեղ հարկ եղած ուշադրությունն ենք նվիրում հասարակական կարգապահության ամրապնդմանը, հասարակության հանդեպ բոլոր քաղաքացիների պարտականությունների կատարմանը։ Որովհետև առանց կարգապահության և առանց ամուր հասարակական կարգի դեմոկրատիան անիրագործելի է։ Իր պարտականությունների, ժողովրդի շահերի նկատմամբ յուրաքանչյուր քաղաքացու հենց պատասխանատու մոտեցումն է ստեղծում սոցիալիստական դեմոկրատիզմի, անհատի իսկական ազատության սկզբունքների առավել լրիվ մարմնավորման միակ հուսալի բազան։ (Ծափահարություններ)։

Կարելի է հիշեցնել Լենինի այն խոսքերը, որ մեր հասարակության մեջ բարոյական է այն ամենը, ինչ ծառայում է կոմունիզմի կառուցման շահերին։ Ճիշտ նույն կերպ մենք կարող ենք ասել. մեզ համար դեմոկրատական է այն, ինչը ծառայում է ժողովրդի շահերին, կոմունիստական շինարարության շահերին։

Այն, ինչը հակասում է այդ շահերին, մենք մերժում ենք, և ոչ ոք մեզ չի համոզի, թե դա սխալ մոտեցում է։ Մենք հաստատ գիտենք, թե ինչ ուղղությամբ ենք ընթանում՝ կատարելագործելով մեր քաղաքական սիստեմը։ Մենք լիովին համոզված ենք մեր ընտրած կուրսի ճշտությանը։ (Երկարատև ծափահարություններ)։

Այժմ մենք արդեն ոչ միայն տեսությունից, այլև բազմամյա պրակտիկայից գիտենք, ինչպես որ իսկական դեմոկրատիան է անհնար առանց սոցիալիզմի, այնպես էլ սոցիալիզմն է անհնար առանց դեմոկրատիայի մշտական զարգացման։ (Ծափահարություններ)։ Մեր սոցիալիստական դեմոկրատիայի կատարելագործումը մենք նախ և առաջ հասկանում ենք որպես հասարակության բոլոր գործերի կառավարմանը աշխատավորության ավելի ու ավելի լայն մասնակցության անշեղ ապահովում, որպես մեր պետականության դեմոկրատական հիմունքների հետագա զարգացում, որպես անհատի բազմակողմանի ծաղկման պայմանների ստեղծում։ Այդ ուղղությամբ կուսակցությունն աշխատել է և կաշխատի այսուհետև։

Ընկերնե՛ր։ Սոցիալիզմը դինամիկորեն զարգացող հասարակարգ է։ Մենք ոչ մի օր տեղում կանգնած չենք մնում, մենք շարունակ առաջ ենք գնում։ Ուստի մեր հասարակության քաղաքական սիստեմի կատարելագործման նպատակով կատարված աշխատանքը սոցիալական խոր իմաստ և նշանակություն ունի։

Կրկնում եմ՝ շատ բան է արված։ Եվ այժմ հասել է ժամանակը ընդհանրացնելու այն, ինչ արդեն կատարված է։ Մենք սրանից ենք ելնում ՍՍՀՄ-ի նոր սահմանադրության նախագիծը մշակելիս։ Այդ աշխատանքը կատարվում է մանրակրկիտ կերպով, առանց շտապողականության, որպեսզի հնարավորին չափ ճշգրտորեն կշռադատվի յուրաքանչյուր ծագող պրոբլեմ և ապա նախագիծը ներկայացվի համաժողովրդական քննարկման։ Բայց այստեղ, համագումարում, կկամենայի խոսել մի քանի գլխավոր մոմենտների մասին, որոնցից մենք ելնում ենք այդ աշխատանքում։

Սահմանադրության նոր նախագծի մեջ, ըստ երևույթին, պետք է արտացոլել սոցիալիզմի մեծ հաղթանակները, վավերագրել սոցիալիստական կարգերի ոչ միայն ընդհանուր սկզբունքները, որոնք արտահայտում են մեր պետության դասակարգային էությունը, այլև զարգացած սոցիալիստական հասարակության, նրա քաղաքական կազմակերպության հիմնական գծերը։ (Ծափահարություններ)։



Կոմունիզմի նյութատեխնիկական բազայի կառուցման հետ կապված խնդիրների բնույթը անհրաժեշտ է դարձնում սահմանադրության մեջ առավել հանգամանորեն խոսել ժողովրդական տնտեսության ղեկավարման սկզբունքների մասին։ Միաժամանակ նպատակահարմար է արտացոլել նաև պետության դերը հասարակության հոգևոր կյանքում, գիտության, ժողովրդական կրթության, կուլտուրայի զարգացման համար պայմանների ապահովման գործում։ Դրանով իսկ մենք կընդգծենք սոցիալիստական պետության մարդասիրական բնույթը, որպես մի տեսության, որն իր առջև նպատակ է դնում կոմունիզմի կառուցումը՝ հանուն աշխատավոր մարդու, հանուն ամբողջ ժողովրդի շահերի։

Նոր սահմանադրության նախագծի հիմնական առանձնահատկություններից մեկը կլինի սոցիալիստական դեմոկրատիայի հետագա ամրապնդումն ու զարգացումը։

Նախատեսվում է սահմանել իշխանության ընտրովի մարմինների առջև բոլոր գործադիր մարմինների հաշվետվության առավել կուռ սիստեմ։ Այնուհետև նախատեսվում է ընդհանուր միութենական օրենքների նախագծերը ներկայացնել համաժողովրդական քննարկման, որն այսօր էլ կիրառվում է, բայց օրենսդրականորեն վավերագրված չէ։

Իհարկե, այստեղ թվարկվեցին սոսկ մի քանի հիմնական մոմենտներ։ Բայց կարծում ենք, որ ասվածը պատկերացում է տալիս այն ուղղության մասին, որով ընթանում է աշխատանքը։

Մենք ելել և ելնում ենք այն բանից, որ նոր սահմանադրությունը պետք է վավերագրի և ճշգրտորեն սահմանի մեր պետության գերագույն նպատակը։ Իսկ այդ գերագույն նպատակը կոմունիստական հասարակարգի կառուցումն է։ (Երկարատև ծափահարություններ)։

* * *

Ընկերնե՛ր։ Մենք մեր համագումարում կամփոփենք հինգ տարվա լարված աշխատանքի արդյունքները։ Դրանք լավ արդյունքներ են։ Մենք կքննարկենք առաջիկա հնգամյակի մեր պլանները։ Դրանք լարված, բայց ռեալ, մտածված պլաններ են։

Ուրեմն, եկեք ամբողջ արվածին, այն ամենին, ինչ մենք մտադրվում ենք կատարել, մոտենանք պատմական առավել լայն չափանիշով։

Շուտով, մեկուկես տարի հետո, նշվելու է Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության 60-ամյակը։ Վեց տասնամյակը մարդու կյանքի միջին տևողությունից քիչ է։ Բայց այդ ժամանակամիջոցում մեր երկիրը անցել է մի ուղի, որը հարյուրամյակների է հավասար։ (Երկարատև ծափահարություններ)։

Մենք ստեղծել ենք նոր հասարակարգ, մի այնպիսի հասարակարգ, որի նմանը մարդկությունը դեռ չէր իմացել։ Դա անճգնաժամ, մշտապես աճող էկոնոմիկայի, սոցիալիստական հասուն հարաբերությունների, իսկական ազատության հասարակարգ է։ Դա մի հասարակարգ է, որտեղ տիրապետում է գիտական մատերիալիստական աշխարհայացքը։ Դա մի հասարակարգ է, որն անսասանորեն վստահ է ապագայի, կոմունիստական լուսավոր հեռանկարների։ Մեր առջև բաց են հետագա համակողմանի առաջադիմության անծայրածիր հեռաստանները։

Անցած ուղու մյուս գլխավոր արդյունքը մեր սովետական ապրելակերպն է։ Իսկական կոլեկտիվիզմի ու ընկերականության մթնոլորտ, երկրի բոլոր ազգերի ու ժողովուրդների համախմբվածություն, բարեկամություն, որոնք օրեցօր ամրապնդվում են, բարոյական առողջություն, որը մեզ դարձնում է զորեղ, տոկուն՝ այսպիսիք են մեր ապրելակերպի վառ կողմերը, այսպիսիք են սոցիալիզմի մեծ նվաճումները, որոնք դարձել են մեր իրականության ուղն ու ծուծը։ (Երկարատև ծափահարություններ)։

Եվ վերջապես, անցած 60-ամյակի կարևորագույն արդյունքն է սովետական մարդը։ Մարդ, որը կարողացավ ազատությունը նվաճելուց հետո այն պաշտ-

պանել ամենածանր մարտերում։ Մարդ, որը կառուցեց ապագան, չխնայելով ուժերը և դիմելով ամեն մի զոհաբերության։ Մարդ, որն անցնելով բոլոր փորձությունների միջով, ինքն էլ փոխվեց անճանաչելիորեն, իր մեջ միացնելով գաղափարական համոզվածությունն ու հսկայական կենսական եռանդը, կուլտուրան, գիտելիքները և դրանք կիրառելու կարողությունը։ Դա մի այնպիսի մարդ է, որը լինելով ջերմագին հայրենասեր, եղել է և միշտ կլինի հետևողական ինտերնացիոնալիստ։ (Երկարատև ծափահարություններ)։

Սովետների երկիրը ամբողջ երկրագնդի ժողովուրդների աչքում իրավամբ հանդես է գալիս որպես խաղաղության ապավեն և խաղաղության դրոշակակիր։ Մենք հնարավոր ամեն ինչ անում ենք և կանենք, որպեսզի պաշտպանենք ու ամրապնդենք խաղաղությունը, մարդկությունը փրկենք նոր կործանարար պատերազմներից։

Այո, մենք գիտե՛նք, որ դեռևս ոչ բոլոր պրոբլեմներն են լուծված։ Մենք մեր բոլոր քննադատներից լավ գիտենք մեր թերությունները, տեսնում ենք դժվարությունները։ Եվ մենք հաջողությամբ հաղթահարում ենք դրանք։ Մենք տեսնում ենք և գիտենք այն ուղիները, որոնք տանում են դեպի մեր հասարակարգի հետագա զարգացում և կատարելագործում։ (Ծափահարություններ)։

Մենք դեռևս չենք հասել կոմունիզմին, բայց ամբողջ աշխարհն է տեսնում, որ մեր կուսակցության գործունեությունը, նրա ձգտումները նպատակամղված են այն բանին, որ հնարավոր ամեն ինչ արվի մարդու բարօրության համար, հանուն մարդու։ Կուսակցության հենց այդ վսեմ մարդասիրական նպատակն է նրան հարազատացնում ժողովրդի հետ, նրան սովետական բոլոր մարդկանց հետ միացնում ամուր, անքակտելի կապերով։ (Ծափահարություններ)։

Սովետական մարդիկ գիտեն. այնտեղ, որտեղ դժվարություններ կան, այնտեղ առջևում կոմունիստներն են։ Սովետական մարդիկ գիտեն. ինչ էլ պատահելիս լինի, կոմունիստները հուսախաբ չեն անի։ Սովետական մարդիկ գիտեն. այնտեղ, որտեղ կուսակցությունն է, այնտեղ հաջողություն է, այնտեղ հաղթանակ։ (Բուռն, երկարատև ծափահարություններ)։ Ժողովուրդը վստահում է կուսակցությանը։ Նա ամբողջովին պաշտպանում է կուսակցության ներքին ու արտաքին քաղաքականությունը։ Եվ դա տասնապատկում է կուսակցության ուժերը, անսպառ եռանդի աղբյուր ծառայում նրա համար։ (Ծափահարություններ)։

Բայց կոմունիստներն էլ լավ գիտեն, որ այն ժողովուրդը, որն իրենց վստահել է երկրի ղեկավարումը, բացառիկ աշխատասեր, քաջարի, տոկուն, շռայլ հոգու տեր, օժտված և խելացի ժողովուրդ է։ (Բուռն, երկարատև ծափահարություններ)։ Դա մի ժողովուրդ է, որը անընկճելի է ծանր ժամանակներում։ Նա ցավում է իր վիթխարի գործում եղած յուրաքանչյուր վրիպման համար։ Նա չի պարծենում իր նվաճումներով, բայց և չի նսեմացնում դրանք։ Նա զգայուն է ուրիշ ժողովուրդների թե՛ ուրախության և թե՛ փորձանքի հանդեպ, պատրաստ է նրանց օգնելու արդարության, ազատության, սոցիալական առաջադիմության համար մղվող պայքարում։ Սովետական ժողովուրդը, իրոք, մեծ, հերոս ժողովուրդ է։ (Բուռն, երկարատև ծափահարություններ)։

Ընկերնե՛ր։ Սովետական երկիրը, մեր ժողովուրդը դժվարին, բայց փառավոր ուղի են անցել։ Ես կարծում եմ, որ մեզանից՝ կոմունիստներից յուրաքանչյուրը, եթե նրան հարցնեին, թե ինքը կցանկանար, արդյո՞ք, ընտրել ուրիշ ճանապարհ, կպատասխաներ. ո՛չ։ Մեր ճանապարհը ճշմարտության ճանապարհն է, ազատության ճանապարհը, դա ժողովրդի երջանկության ճանապարհն է։ (Երկարատև ծափահարություններ)։

Այն որոշումները, որ կընդունի մեր համագումարը, հուժկու ազդակ կծառայեն նոր գործերի համար։ Դրանց կատարումը յուրաքանչյուր կոմունիստի, յուրաքանչյուր կուսակցական կազմակերպության և մեր ամբողջ կուսակցության պատվի գործն է։



Ուրեմն, եկեք ընկերնե՛ր, այսուհետև ևս առաջ ընթանանք դեպի այն բարձր նպատակները, որոնց մենք ձգտում ենք։ (Բուռն ծափահարություններ)։

Կեցցե՛ մեր լենինյան կոմունիստական կուսակցությունը՝ գիտական կոմունիզմի կուսակցությունը։ (Բուռն ծափահարություններ)։

Կեցցե՛ մեր ժողովուրդը՝ մարդկության պատմության մեջ առաջին կոմունիստական հասարակարգ կառուցողը։ (Բուռն ծափահարություններ)։

Թող ամրապնդվեն և զարգանան սոցիալիզմի երկրների ժողովուրդների բարեկամությունը, կոմունիստների, սոցիալական ու ազգային ազատագրության բոլոր ուժերի ինտերնացիոնալ համախմբվածությունը։ (Բուռն ծափահարություններ)։

Կեցցե՛ կայուն, արդարացի խաղաղությունը։ (Բուռն ծափահարություններ)։

Կեցցե՛ կոմունիզմը։ (Բուռն ծափահարություններ)։

Ընկեր Լ. Ի. Բրեժնևի եզրափակիչ խոսքերը ներկաները դիմավորեցին բուռն, երկարատև օվացիայով։ Համագումարի պատգամավորներն ու հյուրերը ոտքի են կանգնում։ Դահլիճի կամարների ներքո հնչում են կեցցեներ՝ ի պատիվ Սովետական Միության կոմունիստական կուսակցության, նրա լենինյան Կենտրոնական կոմիտեի, հուժկու բացականչություններ՝ «Ուռա», «Փառք ՍՄԿԿ-ին», «Կեցցե մեր լենինյան կուսակցությունը», «Կեցցե սովետական մեծ ժողովուրդը»։

# ԸՆԿԵՐ Լ. Ի. ԲՐԵԺՆԵՎԻ ԵԶՐԱՓԱԿՄԱՆ ԽՈՍՔԸ 1976 ԹՎԱԿԱՆԻ ՄԱՐՏԻ 1-ԻՆ

Ընկեր պատգամավորնե՛ր։

Կուսակցության Կենտրոնական կոմիտեի հաշվետու զեկուցման քննարկմանը մասնակցեցին բոլոր հանրապետությունների ներկայացուցիչները՝ կենտկոմների քարտուղարները, մարզկոմների քարտուղարները, հանդես եկան բանվորներ, կոլտնտեսականներ, մեր մտավորականությունը։ Արծարծվեցին կուսակցության ներքին և արտաքին քաղաքականության բազմապիսի հարցեր։ Կարելի է չտարակուսել, որ Կենտկոմի նոր կազմը, որ մենք կընտրենք, ուշադիր կուսումնասիրի այստեղ արտահայտված նկատառումները և դրանք հաշվի կառնի իր աշխատանքում։

Իսկ այժմ, խոսելով մտքերի փոխանակության ընդհանուր ուղղվածության մասին, կկամենայի առանձնացնել երեք, ըստ իս, գլխավոր մոմենտ։

Ամենից առաջ մեծ գոհունակությամբ կարելի է նշել, որ այս ամբիոնից հանդես եկած Համագումարի բոլոր պատգամավորները միահամուռ հավանություն տվեցին Կենտրոնական կոմիտեի քաղաքական գծին և պրակտիկ գործունեությանը։ (Երկարատև ծափահարություններ)։

Լիակատար պաշտպանություն ստացավ նաև Կենտկոմի զեկուցման մեջ նախատեսված՝ ապագայի կուրսը։ (Երկարատև ծափահարություններ)։

Իսկ դա նշանակում է, ընկերներ, որ մեր բազմամիլիոնանոց կուսակցությունը, որի կամքը մենք բոլորս այստեղ արտահայտում ենք, իր XXV համագումարը եկավ համախմբված, գաղափարապես ու քաղաքականապես միասնական։ (Ծափահարություններ)։

Չի կարելի չնշել մտքերի փոխանակության բացառիկ կոնստրուկտիվ, գործնական ու սկզբունքային բնույթը։

Անցած հնգամյակի արդյունքների լուրջ վերլուծություն. խորհրդածություններ կուսակցության և երկրի ներկայի ու ապագայի մասին. խոր, հետաքրքրական առաջարկություններ մեր զարգացման շատ պրոբլեմների վերաբերյալ. ինքնաքննադատական, խստապահանջ մոտեցում սեփական գործունեությանը, — այսպիսին էր, ես կասեի, այստեղ հնչած ճառերի գլխավոր բնութագիրը։

Իսկ դա նշանակում է, որ համագումարում, ինչպես որ ամբողջ կուսակցության մեջ, իշխում է կոմունիստներին վայել՝ աշխատանքի ստեղծագործական ոճ։ (Ծափահարություններ)։ Ամբողջ ձայնով միահամուռ հնչեցին խոսքեր պրոլետարական ինտերնացիոնալիզմի մասին (ծափահարություններ), ժողովուրդների բարեկամության և խաղաղության պայքարի մասին։ (Ծափահարություններ)։ Դա մեր քաղաքականությունն է, և մենք դրանից չենք նահանջի։ (Ծափահարություններ)։

Չի կարելի չնշել ելույթ ունեցողների հսկայական լավատեսությունը, նրանց վստահ, նպատակասլաց տոնը։ Դա մեր գործի հաջողության նկատմամբ եղած անհողդողդ վստահության արգասիքն է։ Դա մեր պլանների ռեալության արգասիքն է, այն բանի ըմբռնման արգասիքը, որ եթե կուսակցությունն իր կոլեկտիվ բանականությամբ նպատակներ է նշում, իր առջև և ամբողջ երկրի առջև խնդիրներ է դնում, ապա այդ նպատակները կիրագործվեն, այդ խնդիրները կլուծվեն։ (Բուռն, երկարատև ծափահարություններ)։

Ես երախտապարտ եմ այն բոլոր ընկերներին, որոնք բարձր գնահատեցին հաշվետու զեկուցումը։ Մեր Կենտկոմի և քաղբյուրոյի հասցեին, իմ հասցեին բարի խոսքեր ասացին նաև մեր արտասահմանյան բարեկամները։ Սակայն մենք ճիշտ կվարվենք, եթե ձեռք բերված հաջողությունները համարենք կոլեկտիվ աշխատանքի, ինչպես կուսակցական ղեկավար մարմինների, այնպես էլ բոլոր կուսակցական կոմիտեների և կազմակերպությունների համատեղ ջանքերի արդյունքը։ (Ծափահարություններ)։

Մենք ճիշտ կվարվենք, լենինաբար կվարվենք, եթե, պատշաճը հատուցելով ձեռք բերվածին, ուշադրությունը կենտրոնացնենք մեզանում դեռևս գոյություն ունեցող թերությունների վրա, չլուծված խնդիրների վրա։

Կարծում եմ, Համագումարի պատգամավորները համաձայն կլինեն, որ գործի նկատմամբ հենց այդպիսի մոտեցումը ամենից ավելի լավ կնպաստի կոմունիստների և մեր ամբողջ ժողովրդի քաղաքական ակտիվության ու ստեղծագործական եռանդի աճին։ (Երկարատև ծափահարություններ)։

Սրանով թույլ տվեք ավարտել։ Կարծում եմ, որ Կենտկոմի հաշվետվության առթիվ մտքերի փոխանակության բնույթն ու բովանդակությունը ինձ ազատում են ավելի ծավալուն եզրափակման խոսքից։ (Բուռն, երկարատև ծափահարություններ։ Բոլորը ոտքի են կանգնում։ Դահլիճում որոտում է օվացիան։ Հնչում են բացականչություններ՝ «Ուռա», «Փա՜ռք ՍՄԿԿ-ին», «Փա՜ռք լենինյան Կենտկոմին»)։

## Սովետական Միության կոմունիստական կուսակցության XXV համագումարի

# ԲԱՆԱՁԵՎԸ

## ԸՆԿԵՐ Լ. Ի. ԲՐԵԺՆԵՎԻ «ՍՄԿԿ ԿԵՆՏՐՈՆԱԿԱՆ ԿՈՄԻՏԵԻ ՀԱՇՎԵՏՎՈՒԹՅՈՒՆԸ ԵՎ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ՀԵՐԹԱԿԱՆ ԽՆԴԻՐՆԵՐԸ ՆԵՐՔԻՆ ՈՒ ԱՐՏԱՔԻՆ ՔԱՂԱՔԱԿԱՆՈՒԹՅԱՆ ԲՆԱԳԱՎԱՌՈՒՄ» ԶԵԿՈՒՑՄԱՆ ԱՌԹԻՎ

Լսելով և քննարկելով ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար ընկեր Լ. Ի. Բրեժնևի «ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեի հաշվետվությունը և կուսակցության հերթական խնդիրները ներքին ու արտաքին քաղաքականության բնագավառում» զեկուցումը, Սովետական Միության կոմունիստական կուսակցության XXV համագումարը որոշում է.

1. Ամբողջովին և լիովին հավանություն տալ կուսակցության Կենտրոնական կոմիտեի քաղաքական գծին և պրակտիկ գործունեությանը:

2. Հավանություն տալ ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեի հաշվետու զեկուցմանը և բոլոր կուսակցական կազմակերպություններին առաջարկել իրենց աշխատանքում ղեկավարվել ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեի հաշվետու զեկուցման մեջ ընկեր Լ. Ի. Բրեժնևի առաջ քաշած դրույթներով ու խնդիրներով:

---

## Սովետական Միության կոմունիստական կուսակցության XXV համագումարի

# ՈՐՈՇՈՒՄԸ

## «ՍՍՀՄ ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ՏՆՏԵՍՈՒԹՅԱՆ ԶԱՐԳԱՑՄԱՆ 1976—1980 ԹՎԱԿԱՆՆԵՐԻ ՀԻՄՆԱԿԱՆ ՈՒՂՂՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ» ՍՄԿԿ ԿԵՆՏԿՈՄԻ ՆԱԽԱԳԾԻ ԱՌԹԻՎ

Լսելով և քննարկելով ՍՍՀՄ Մինիստրների սովետի նախագահ ընկեր Ա. Ն. Կոսիգինի զեկուցումը ՍՍՀՄ ժողովրդական տնտեսության զարգացման 1976—1980 թվականների հիմնական ուղղությունների մասին, Սովետական Միության կոմունիստական կուսակցության XXV համագումարը որոշում է.

Հաստատել ՍՍՀՄ ժողովրդական տնտեսության զարգացման 1976—1980 թվականների հիմնական ուղղությունները, որոնք լիակատար հավանության են արժանացել համաժողովրդական քննարկման ընթացքում:

Առաջարկել ՍՍՀՄ Մինիստրների սովետին՝ ղեկավարվելով հիմնական ուղղություններով, ապահովել ՍՍՀՄ ժողովրդական տնտեսության զարգացման 1976—1980 թվականների պետական հնգամյա պլանի մշակումը՝ բաշխելով ըստ հնգամյակի տարիների և ըստ ՍՍՀՄ մինիստրությունների, գերատեսչությունների և միութենական հանրապետությունների:

Տասներորդ հնգամյա պլանը մշակելիս քննության առնել այն առաջարկությունները, որոնք մտցվել են ՍՄԿԿ XXV համագումարում, միութենական հանրապետությունների կոմկուսների համագումարներում, երկրամասային, մարզային, քաղաքային և շրջանային կուսակցական կոնֆերանսներում, սկզբնական կուսակցական կազմակերպություններում, աշխատավորների ժողովներում և մամուլում, ինչպես նաև բանվորների, կոլտնտեսականների, ինժեներների ու տեխնիկների, գիտության և կուլտուրայի գործիչների նամակներում:

Հանձնարարել ՍՍՀՄ Մինիստրների սովետին՝ ՍՍՀՄ ժողովրդական տնտեսության զարգացման 1976—1980 թվականների պետական հնգամյա պլանի նախագիծը մտցնել ՍՍՀՄ Գերագույն սովետի քննարկմանը 1976 թվականի սեպտեմբերին:

ՍՄԿԿ XXV համագումարը սոցիալիստական էկոնոմիկայի զարգացման նոր հնգամյա պլանի մշակումն ու իրականացումը համարում է բոլոր կուսակցական, սովետական, արհմիութենական, կոմերիտական և տնտեսական կազմակերպությունների տնտեսական-քաղաքական կարևորագույն խնդիրը:

# ԸՆԿԵՐ Լ. Ի. ԲՐԵԺՆԵՎԻ ՃԱՌԸ ՀԱՄԱԳՈՒՄԱՐԻ ՓԱԿՄԱՆ ԺԱՄԱՆԱԿ

Ընկեր պատգամավորնե՛ր։

Հենց նոր իր աշխատանքն ավարտեց մեր կուսակցության XXV համագումարի ընտրած Կենտրոնական կոմիտեի առաջին պլենումը։ Թույլ տվեք զեկուցել այդ պլենումի աշխատանքի արդյունքների մասին։

Այդ պլենումում, որն անցավ միասնության և համախմբվածության մթնոլորտում, կուսակցության Կենտրոնական կոմիտեն միաձայն ընտրեց իր ղեկավար մարմինները։ Պլենումը միաձայն ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար ընտրեց ընկեր Լ. Ի. Բրեժնևին։ (Բուռն, երկարատև ծափահարություններ։ Բոլորը ոտքի են կանգնում։ Դահլիճում թնդում է «ուռա»)։

Պլենումում դարձյալ միաձայն քաղբյուրոյի անդամներ ընտրվեցին ընկերներ՝ Լ. Ի. Բրեժնևը (ծափահարություններ), Յու. Վ. Անդրոպովը (ծափահարություններ), Ա. Ա. Գրեչկոն (ծափահարություններ), Վ. Վ. Գրիշինը (ծափահարություններ), Ա. Ա. Գրոմիկոն (ծափահարություններ), Ա. Պ. Կիրիլենկոն (ծափահարություններ), Ա. Ն. Կոսիգինը (ծափահարություններ), Ֆ. Դ. Կուլակովը (ծափահարություններ), Դ. Ա. Կունաևը (ծափահարություններ), Կ. Տ. Մազուրովը (ծափահարություններ), Վ. Վ. Շչերբիցկին (ծափահարություններ), Ա. Յա. Պելշեն (ծափահարություններ), Ն. Վ. Պոդգոռնին (ծափահարություններ), Գ. Վ. Ռոմանովը (ծափահարություններ), Մ. Ա. Սուսլովը (ծափահարություններ), Դ. Ֆ. Ուստինովը (ծափահարություններ)։

Քաղբյուրոյի անդամության թեկնածուներ ընտրվեցին ընկերներ՝ Հ. Ա. Ալիևը (ծափահարություններ), Պ. Ն. Դեմիչևը (ծափահարություններ), Պ. Մ. Մաշերովը (ծափահարություններ), Բ. Ն. Պոնոմարյովը (ծափահարություններ), Շ. Ռ. Ռաշիդովը (ծափահարություններ), Մ. Ս. Սոլոմենցևը (ծափահարություններ)։

Կենտկոմի քարտուղարներ են ընտրվել՝ Լ. Ի. Բրեժնևը, Մ. Ա. Սուսլովը, Ա. Պ. Կիրիլենկոն, Ֆ. Դ. Կուլակովը, Դ. Ֆ. Ուստինովը, Բ. Ն. Պոնոմարյովը, Ի. Վ. Կապիտոնովը, Վ. Ի. Դոլգիխը, Կ. Ֆ. Կատուշևը, Մ. Վ. Զիմյանինը, Կ. Ու. Չեռնենկոն (ծափահարություններ)։

ՍՄԿԿ Կենտկոմին առընթեր կուսակցական վերահսկողության կոմիտեի նախագահ հաստատվեց ընկեր Ա. Յա. Պելշեն (ծափահարություններ)։

ՍՄԿԿ Կենտրոնական վերստուգիչ հանձնաժողովը իր նախագահ ընտրեց ընկեր Գ. Ֆ. Սիզովին (ծափահարություններ)։

Ընկեր պատգամավորնե՛ր։

Կուսակցության նորընտիր Կենտրոնական կոմիտեի անդամներն ինձ հանձնարարել են համագումարի պատգամավորներին սրտագին շնորհակալություն հայտնել իրենց ցույց տրված վստահության համար։ (Ծափահարություններ)։ Թույլ տվեք ձեզ հավաստիացնել, որ Կենտրոնական կոմիտեն, ամբողջությամբ վերցրած, նրա ընտրած քաղբյուրոն և քարտուղարությունը ամեն ինչ կանեն, որպեսզի գտնվեն իրենց վրա դրված պատասխանատվության բարձրության վրա։ (Ծափահարություններ)։

Մենք, բնականաբար, մեր գլխավոր խնդիրն ենք համարում ապահովել կուսակցության XXV համագումարի որոշումների կենսագործումը, ուրեմն և



ապահովել կոմունիզմի գործի և խաղաղության գործի նոր մեծ հաղթանակների ձեռքբերումը։ (Երկարատև ծափահարություններ)։

Թանկագին ընկերնե՛ր։ Սովետական Միության կոմունիստական կուսակցության XXV համագումարը ավարտման վրա է։

Համագումարը քննարկեց անցած հնգամյակի արդյունքները, ուշադրությամբ և օբյեկտիվորեն վերլուծեց կուտակված փորձը, քննության առավ ապագայի մեր պլանները։ Այժմ մենք ավելի լավ ենք տեսնում, թե որտեղ են հետագա աճի նոր աղբյուրները, նոր ռեզերվները, ավելի հստակորեն ենք հասկանում կուսակցության առջև կանգնած խնդիրները։

Համագումարը որոշեց կուսակցության սկզբունքային քաղաքական կուրսը առաջիկա տարիների համար։

Ընկերնե՛ր։ Մեր XXV համագումարը նոր բնագծեր առաջադրեց երկրի հզորության հետագա աճի, սովետական մարդկանց կենսամակարդակի բարձրացման, մեր ամբողջ հասարակական կյանքի կատարելագործման համար մղվող պայքարում։ Նա նոր կոնկրետ խնդիրներ առաջադրեց նաև արտաքին քաղաքականության բնագավառում, խաղաղության և միջազգային համագործակցության, ժողովուրդների ազատության և անկախության համար մղվող պայքարում։

Այն պլանները, որոնց հավանություն տվեց համագումարը,— ոչ դյուրին, լարված պլաններ են։ Այն խնդիրները, որ նա առաջադրեց,— շատ լուրջ խնդիրներ են։ Բայց մենք վստահ ենք, ընկերնե՛ր, մենք հաստատ համոզված ենք, որ այդ պլանները կկենսագործվեն, այդ խնդիրները կլուծվեն։ (Բուռն, երկարատև ծափահարություններ)։ Չէ որ դրանց նպատակն է ապահովել մեր սոցիալիստական հայրենիքի հետագա ծաղկումը, սովետական մարդկանց խաղաղ ու երջանիկ կյանքը, ուստի և, անտարակույս, կպաշտպանվեն սովետական ամբողջ ժողովրդի կողմից։ (Երկարատև ծափահարություններ)։

Ընկերնե՛ր։ Մեր համագումարի աշխատանքը ասես դուրս էր եկել այս դահլիճի պատերի սահմաններից շատ հեռու։ Կարելի է ասել՝ այն տեղի էր ունենում բոլոր կուսակցական կազմակերպություններում, գործարաններում և գիտական ինստիտուտներում, կոլտնտեսային և սովխոզային դաշտերում ու ֆերմաներում, մեր ամբողջ անծայրածիր երկրում։ Սովետական միլիոնավոր մարդիկ ձգտում էին բարի գործերով, իրենց աշխատանքի ամենալավ արդյունքներով դիմավորել Սովետական Միության կոմունիստական կուսակցության XXV համագումարը։ (Ծափահարություններ)։ Եվ որքա՜ն շատ են դրանք՝ այդ հարվածային աշխատանքի, այդ ազնիվ մրցության հրաշալի արդյունքները։ Հիշեցնեմ թեկուզ մի քանիսի մասին։

Ժամկետից շուտ ջրարկվեց «Սիբիր» ատոմային սառցահատը։ Սովետական մարդատար ավտոմեքենաների ընտանիքը համալրվեց «Մոսկվիչների» և ՎԱԶ-երի նոր մոդելներով։ Ժամկետից շուտ ավարտվեց 350 տեղանոց Իլ—86 հսկա մարդատար ինքնաթիռի հավաքման կարևոր փուլը և սկսվեցին ՅԱԿ—42 ինքնաթիռի թռիչքային փորձարկումները։ Լենինգրադցիներն ստեղծեցին մեկ միլիոն 200 հազար կիլովատ կարողությամբ երկրի ամենահզոր տուրբոգեներատորը, իսկ երկրի մյուս ծայրում արդյունաբերական հոսանք տվեց Զեյայի հիդրոէլեկտրակայանը՝ սովետական հեռավոր արևելքի հիդրոէներգետիկայի առաջնեկը։ Հարավում ավարտվել են Հյուսիս-ղրիմյան ջրանցքի առաջին՝ 400 կիլոմետրանոց հերթի կառուցման հիմնական աշխատանքները, իսկ Միության հյուսիս-արևելքում բացվել են բազմամետաղների, երկաթի հանքաքարերի, ադամանդների նոր հանքավայրեր։ ՍՍՀՄ գիտությունների ակադեմիան ստացավ և գործարկեց եզակի, աշխարհում ամենամեծ օպտիկական հեռադիտակը։

Ահա դրանք՝ այն փառահեղ գործերը, որոնցով սովետական մարդիկ դիմավորեցին իրենց կոմունիստական կուսակցության XXV համագումարը։ (Երկարատև ծափահարություններ)։ Դա, ընկերնե՛ր, մեր հասարակարգում կուսակցության և ժողովրդի նպատակների, խոհերի ու գործերի միասնության ամենահզոր, ամենաազդու ցուցադրումն է։ (Ծափահարություններ)։ Այդ հերոսական գործերի մասնակիցներից յուրաքանչյուրը, լինի նա կոմունիստ թե

անկուսակցական, ըստ էության, իր ավանդն է մուծել մեր համագումարի աշխատանքում:

Եվ այդ ավանդը կուսակցությունը բարձր է գնահատում որպես սովետական հայրենասիրության, կոմունիստական շինարարության մեր ընդհանուր մեծ գործի նկատմամբ հոգատարության հոյակապ դրսևորում: (Երկարատև ծափահարություններ):

Կամ վերցրեք մի այլ բան՝ այն նամակների ու հեռագրերի բազմահազարանոց անվերջանալի հոսանքը, որոնք օրեցօր, ժամ առ ժամ ստացվում էին և մինչև օրս էլ ստացվում են մեր համագումարի հասցեով: Դրանք անկարելի է կարդալ առանց հուզմունքի և հպարտություն չզգալ մեր սովետական մարդու համար, սովետների երկրի քաղաքականապես հասուն և ակտիվ քաղաքացու, ջերմ հայրենասերի և ինտերնացիոնալիստի համար: (Երկարատև ծափահարություններ):

Այդ յուրատեսակ վավերագրական հերոսապատումի բովանդակությանը դուք, ընկեր պատգամավորներ, ամեն օր ծանոթանում էիք՝ կարդալով համագումարի ինֆորմացիոն հրատարակության թողարկումները: Դրանցում կային զեկույցներ արտադրական հոյակապ հաջողությունների մասին, ջերմ ողջույններ և բարեմաղթություններ, աշխատավոր մարդկանց սրտաբուխ խոսքերը անմիջական, մենանվիրական բանի՝ սովետական ապրելակերպի, խաղաղության և ստեղծարար աշխատանքի մասին: Այդ ամենի մեջ արտահայտվում է միլիոնավոր աշխատավորների հսկայական խանդավառությունը, կոմունիզմ կառուցող մեծ, հզոր տերության զարկերակի բաբախյունը: (Երկարատև ծափահարություններ):

Թույլ տվեք, ընկեր պատգամավորնե՛ր, ձեր անունից, համագումարի անունից անկեղծ շնորհակալության խոսքեր ասել բոլոր նրանց, ովքեր համակուսակցական համաժողովին են դիմել՝ արտահայտելով իրենց զգացմունքներն ու խոհերը՝ թելադրված հասարակության գործերի, մեր հայրենիքի հետագա բարգավաճման նկատմամբ անկեղծ հոգատարությամբ, կուսակցության լենինյան կուրսի անվերապահ պաշտպանությամբ: (Բուռն, երկարատև ծափահարություններ):

Թույլ տվեք նաև ի սրտե շնորհակալություն հայտնել մեր արտասահմանյան ընկերներին (ծափահարություններ), սոցիալիստական ու կապիտալիստական պետությունների, երիտասարդ ազատագրված երկրների մեր բարեկամների ու բարի կամքի մարդկանց, որոնք համագումարի նախօրեին և նրա աշխատանքի օրերին ուղարկել են տասնյակ հազարավոր նամակներ՝ դրանցում ջերմ ողջույններ և լավագույն բարեմաղթություններ հայտնելով մեր կուսակցությանը, մեր երկրին, սովետական ժողովրդին: (Երկարատև ծափահարություններ):

Ընկերնե՛ր:

Մեր համագումարի աշխատանքին մասնակցեցին կոմունիստական ու բանվորական կուսակցությունների, ազգային-դեմոկրատական կուսակցությունների և շարժումների հարյուրից ավելի պատվիրակություններ:

Այստեղ, այս ամբիոնից, ինչպես նաև երկրի տարբեր քաղաքներում տեղի ունեցած բազմամարդ ժողովներում ու միտինգներում այլ երկրների մեր դասակարգային եղբայրները սրտաբուխ շատ խոսքեր ասացին Սովետական Միության կոմունիստական կուսակցության, սովետական երկրի, մեր ժողովրդի հասցեին: (Երկարատև ծափահարություններ): Նրանք խոսում էին ՍՄԿԿ-ի պատմական առաքելության մասին, որը ժողովուրդների առջև բացել է սոցիալիզմի և կոմունիզմի ուղին: Նրանք խոսեցին այն դերի մասին, որ խաղում է մեր երկիրը բոլոր ժողովուրդների խաղաղության համար մղվող պայքարում:

Մենք երախտապարտ ենք այդ խոսքերի համար և ուզում ենք մեր հերթին բոլոր երկրների կոմունիստներին, բանվորներին, ազգային և սոցիալական ազատության բոլոր մարտիկներին հավաստիացնել՝ Սովետական Միության կոմունիստներն ու ամբողջ ժողովուրդը այսուհետև ևս կգտնվեն իրենց ինտերնացիոնալ խնդիրների բարձրության վրա: (Բուռն, երկարատև ծափահարություններ):

Թանկագին ընկերնե՛ր: Մենք, համագումարի պատգամավորներս, համեմատաբար քիչ ենք՝ ընդամենը մոտ հինգ հազար: Բայց նրանք, ովքեր մեզ ընտրել են, ավելի քան 15 ու կես միլիոն են: Թույլ տվեք համագումարի անունից մեր բոցավառ մարտական ողջույնը հաղորդել մեր երկրի բոլոր կոմունիստներին, նրանց հաջողություն մաղթել իրենց գործերում, իրենց պլաններում, իրենց կյանքում: (Բուռն, երկարատև ծափահարություններ):

Մենք լավ գիտենք, նախատեսված բնագծերին հասնելու համար հարկ կլինի, որ մենք բոլորս շատ և լարված աշխատենք: Յուրաքանչյուր կոմունիստ, յուրաքանչյուր կուսակցական կազմակերպություն, յուրաքանչյուր կուսակցական կոմիտե պետք է իր ավանդը մուծի համագումարի որոշումների կատարման գործում: Հարկավոր է դրանք մարմնավորել կոնկրետ առաջադրանքների և պլանների մեջ: Հարկավոր է ամրապնդել ու պահպանել ոգևորության այն մթնոլորտը, այն աշխատանքային ռիթմը, որոնք ծնունդ առան նախահամագումարյան մրցությամբ: Կենտրոնական կոմիտեն վստահ է, որ դա կարվի: (Երկարատև ծափահարություններ):

Ընկերնե՛ր: Մեր համագումարի առթիվ միջազգային մամուլի, այդ թվում նաև բուրժուական մամուլի արձագանքներում նշվում են սովետական կոմունիստների համախմբվածությունն ու լավատեսությունը, ՍՄԿԿ-ի քաղաքականության խաղաղասիրությունը, կայունությունն ու վստահ բնույթը: Կարծում եմ, մենք և դուք կարող ենք համաձայնել այդ գնահատականին: (Երկարատև ծափահարություններ):

Մեր լենինյան կուսակցության պատմությունը նշանավորված է համագումարների մի հրաշալի պլեադայով: Դրանցից յուրաքանչյուրը կարևոր ուղենիշ է եղել կուսակցության և երկրի կյանքում: Եվ կարելի է չտարակուսել, ընկերնե՛ր, որ XXV համագումարը դրանց շարքում իր առանձնահատուկ, անկրկնելի տեղը կգրավի՝ որպես մեծագործությունների համագումար, որն անցավ ռեալիզմի ու գործարարության, սեփական ուժերի նկատմամբ հանգիստ վստահության, կոմունիզմի կառուցման մեր մեծ գործի (Երկարատև ծափահարություններ), աշխարհի կայուն, արդարացի խաղաղության համար մեր պայքարի նոր հաղթանակների վստահության նշանաբանով: (Բուռն, երկարատև ծափահարություններ):

Կեցցե՛ Սովետական Միության կոմունիստական կուսակցությունը: (Բուռն ծափահարություններ):

Թո՛ղ դարեդար փառավորվի հերոսական սովետական ժողովուրդը: (Բուռն ծափահարություններ):

Թո՛ղ ամուր լինի խաղաղությունը՝ մեր մոլորակի բոլոր մարդկանց խաղաղությունը: (Բուռն ծափահարություններ):

Մարքսիզմ-լենինիզմի դրոշով առաջ դեպի կոմունիզմի կառուցման նոր հաղթանակներ: (Բուռն, երկարատև ծափահարություններ: Բոլորը ոտքի են կանգնում: Դահլիճում թնդում է օվացիան: Պատգամավորները վանկարկում են՝ «Փա՜ռք ՍՄԿԿ-ին», «Կուսակցության լենինյան Կենտրոնական կոմիտեին՝ փա՜ռք, փա՜ռք, փա՜ռք»: «Ուռա»):

# ԱԶԱՏՈՒԹՅՈՒՆ ԻՄՊԵՐԻԱԼԻԶՄԻ ԵՎ ՌԵԱԿՑԻԱՅԻ ԿԱԼԱՆԱՎՈՐՆԵՐԻՆ

## Սովետական Միության կոմունիստական կուսակցության XXV համագումարի հայտարարությունը

ՍՄԿԿ XXV համագումարը, արտահայտելով սովետական կոմունիստների, ամբողջ սովետական ժողովրդի կամքը, հանդիսավորությամբ հռչակում է իր եղբայրական, անխախտ համերաշխությունը կոմունիստների հետ, իմպերիալիզմի ու ռեակցիայի դեմ պայքարող բոլոր մարտիկների և, ամենից առաջ, ֆաշիստական բռնությունների զոհերի հետ, նրանց հետ, ովքեր հեծում են համակենտրոնացման ճամբարներում ու բանտերում, ում ենթարկում են դաժան խոշտանգումների: Նրանց վիճակված անմարդկային փորձությունները դասակարգային վրիժառություն են այն բանի համար, որ նրանք հերոսաբար մասնակցում են աշխատավորության շահերի օգտին, խաղաղության ու դեմոկրատիայի, ազգային անկախության ու սոցիալիզմի իդեալների հաղթանակի օգտին մղվող ազնիվ պայքարին:

Չնայած համաշխարհային հասարակայնության ամենալայն շրջանների ցասումնալի բողոքներին, Չիլիի ֆաշիստական խունտան, ոտնահարելով իրավունքի բոլոր նորմաները, շարունակում է բանտում պահել չիլիական ժողովրդի ականավոր զավակ, միջազգային կոմունիստական շարժման կարկառուն գործիչ, Չիլիի կոմկուսի գլխավոր քարտուղար Լուիս Կորվալանին:

Համագումարը ամենայն հաստատակամությամբ պահանջում է. «Ազատություն Լուիս Կորվալանին: Ազատություն մեր ընկերներին՝ չիլիական կոմկուսի ղեկավարության անդամներ Խ. Կադեմարտորիին և Խ. Մոնտեսին, սոցիալիստական կուսակցության ղեկավարներ Է. Պոնսեին և Կ. Լորկեին, ժողովրդական միասնության մյուս գործիչներին, ֆաշիստական վարչակարգի հազարավոր կալանավորների՝ կոմունիստներին, սոցիալիստներին, բոլոր հայրենասերներին ու դեմոկրատներին:

Առաջադեմ ուժերի հալածանքի նոր ալիք են բարձրացրել Ուրուգվայի իշխանությունները: Մենք պահանջում ենք. ազատություն Ուրուգվայի կոմկուսի Կենտկոմի քարտուղարներ Խ. Պերեսին և Խ. Լ. Մասերեին, ազատություն բոլոր ուրուգվայական կոմունիստներին, Ուրուգվայի լայն ճակատի պրեզիդենտ Լ. Սերենյիին և մյուս դեմոկրատներին:

18 տարի բանտախցում տառապում է Պարագվայի կոմկուսի նախագահ Անտոնիո Մայդանան: Ամբողջ երկրում մոլեգնում է դժնդակ զինվորական դիկտատուրան: Ազատություն Անտոնիո Մայդանային, ազատություն Պարագվայի կոմկուսի Կենտկոմի քարտուղար Մ. Ա. Սոլերին, պարագվայական մյուս հարյուրավոր հայրենասերներին:

Վերջին տարիներս Գվատեմալայում իրար ետևից դաժան դատաստանի զոհեր դարձան Գվատեմալայի աշխատանքի կուսակցության գլխավոր քարտուղարներ Բ. Ալվարադո Մոնսոնը և Ու. Ալվարադո Արելյանոն: Բրազիլիայում բանտերում անհետ կորչում են կոմկուսի և դեմոկրատական օպոզիցիայի գործիչները: Կոմկուսը և մյուս առաջադիմական կազմակերպությունները հետադիմական ուժերի կողմից սիստեմատիկ տեռորի են ենթարկվում Արգենտինայում: Տեռորը չի դադարում Հայիթիում:

Համագումարը իր վճռական բողոքն է հայտնում այդ բոլոր բռնությունների դեմ և պահանջում է վերջ տալ դրանց:



Իմպերիալիստական գործակալների ձեռքով զոհվել են Աֆրիկայի ազգային ազատագրական շարժման ականավոր գործիչներ, Գվինեայի և Կանաչ Հրվանդանի կղզիների անկախության աֆրիկյան կուսակցության գլխավոր քարտուղար Ամիլկար Կաբրալը և Մոզամբիկի ազատագրության ճակատի պրեզիդենտ Էդուարդո Մոնդլանեն:

Մարդկության խղճին ուղղված մարտահրավեր է ռասիստների գերիշխանությունը Հարավ-Աֆրիկյան Հանրապետության, Նամիբիայի և Զիմբաբվեի ժողովուրդների նկատմամբ: Բանտապանների անմարդկային վերաբերմունքը հասցրեց Բրամ Ֆիշերի՝ ռասիզմի ու սոցիալական անարդարության դեմ մղվող պայքարի աննկուն մարտիկի, սքանչելի մարդասերի մահվան: Շատ ծանր պայմաններում են գտնվում Հարավային Աֆրիկայի կոմունիստական կուսակցության՝ աֆրիկյան մայրցամաքի հնագույն կոմկուսի անդամ մյուս բանտարկված գործիչները: Անարգանքի սյունին գամել ռասիստներին և նրանց հանցակիցներին: Ազատություն Աֆրիկայի հարավի ազգային ազատագրական շարժման բոլոր մասնակիցներին:

Հազարավոր կոմունիստներ ոչնչացվեցին Ինդոնեզիայում: Բանտերում, համակենտրոնացման ճամբարներում մինչև հիմա էլ հեծում են տասնյակ հազարավոր քաղբանտարկյալներ: Ազատություն Ինդոնեզիայի կոմունիստներին, բոլոր հայրենասերներին:

Իսրայելի օկուպացրած պաղեստինյան հողում ձերբակալում և բանտում են պահում ագրեսիայի դեմ, սեփական անկախ պետություն ունենալու իրենց ժողովրդի սրբազան իրավունքի օգտին պայքարող մարտիկներին:

Իսպանիայում դարձյալ հրաժարվում են օրինական ազատություն տալ հարյուրավոր քաղբանտարկյալ կոմունիստներին, սոցիալիստներին ու մյուս դեմոկրատներին: Համագումարը պաշտպանում է բոլոր նրանց, ովքեր հանդես են գալիս իսպանական ժողովրդի արդար գործի օգտին:

Համագումարը վճռականորեն դատապարտում է կոմունիստների՝ ժողովուրդների խաղաղության ու անվտանգության հետևողական ջատագովների, աշխատավոր մարդկանց շահերի օգտին, մարդկության լավագույն ապագայի օգտին պայքարող ամենաանձնվեր մարտիկների հալածանքներն ու խտրականությունը նրանց նկատմամբ:

Համագումարը իր լիակատար պաշտպանությունն է հայտնում հեղափոխական, ազատագրական շարժման նահատակներին ու հերոսներին և նրանց հղում է իր եղբայրական ողջույնը:

ՍՄԿԿ XXV համագումարը պաշտպանում և հավանություն է տալիս ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար ընկեր Լ. Ի. Բրեժնևի զեկուցման մեջ արված առաջարկությանը՝ որպես պրոլետարական ինտերնացիոնալիզմի մեծ գործին սովետական կոմունիստների հավատարմության խորհրդանիշ, Մոսկվայում մոնումենտ կառուցել ի հիշատակ միջազգային կոմունիստական, բանվորական ու ազգային ազատագրական շարժման հերոսների, ժողովրդի երջանկության անձնվեր մարտիկների, որոնք ընկել են դասակարգային թշնամու ձեռքով: Բոլշևիկների հերոսական կուսակցության, մյուս երկրների հեղափոխականների բազում սերունդների փորձով մենք գիտենք. պատմության ընթացքը տեռորի միջոցով կանգնեցնելու ամեն տեսակ փորձերը դատապարտված են ձախողման:

ՍՄԿԿ XXV համագումարը աշխարհի բոլոր կոմունիստներին, բոլոր երկրների աշխատավորներին, հասարակական ու քաղաքական կազմակերպություններին կոչ է անում է՛լ ավելի ակտիվորեն պայքարի մեջ ներգրավվել առաջադիմության, դեմոկրատիայի ու սոցիալիզմի ավանգարդային ուժերի դեմ ուղղված տեռորն ու բռնությունները դադարեցնելու համար, ռեակցիայի բոլոր կալանավորներին ազատելու համար:

ՍՄԿԿ-ն, Սովետական Սոցիալիստական Հանրապետությունների Միության ժողովուրդները այսուհետև ևս անշեղորեն կհետևեն մեծ ու ազնիվ նպատակների համար մղվող պայքարի զինակիցների հետ գործուն համերաշխության լենինյան ավանդույթներին, միշտ հավատարիմ կլինեն պրոլետարական ինտերնացիոնալիզմի գործին:

# ԼԵՆԻՆԻ ԴՐՈՇՈՎ ԴԵՊԻ ԿՈՄՈՒՆԻԶՄ

1976 թվականի փետրվարի 24-ից մինչև մարտի 5-ը տեղի ունեցավ Սովետական Միության կոմունիստական կուսակցության XXV համագումարը։

Համագումարը համոզիչ կերպով ցուցադրեց սովետական ժողովրդի հեղափոխական-ստեղծագործական սխրանքների հսկայական թափը և խորությունը, սխրանքներ, որոնք Հոկտեմբերի գործի շարունակությունն են, մեծ Լենինի գաղափարների մարմնավորումը։

Համագումարը հաստատեց, որ մեր կուսակցությունը անշեղորեն ընթանում է լենինյան կուրսով։ Նա արժանավայել է կատարում բանվոր դասակարգի, բոլոր աշխատավորների, ամբողջ ժողովրդի քաղաքական առաջնորդի դերը։ Ժողովուրդը խորապես հասկանում է կուսակցության քաղաքականությունը և ամբողջ սրտով պաշտպանում է այն։ Աճել է մեր սոցիալիստական հայրենիքի հզորությունը։ Ավելի են ամրապնդվել սովետական հասարակության գաղափարական-քաղաքական միասնությունը, մեր երկրի բոլոր ժողովուրդների եղբայրական բարեկամությունը, նրանց համախմբվածությունը կոմունիստական կուսակցության շուրջը։

Համագումարում ներկա էին ավելի քան հարյուր կոմունիստական ու բանվորական կուսակցությունների, ազգային-դեմոկրատական կուսակցությունների և շարժումների ներկայացուցիչներ։ Նրանց մասնակցությունը սովետական կոմունիստների բարձրագույն համաժողովի աշխատանքին ցուցադրեց խաղաղության ու ժողովուրդների ազատության համար, սոցիալական առաջադիմության համար պայքարի համաշխարհային ճակատի մասնակիցների բոլոր ջոկատների հետ մեր կուսակցությանը կապող ինտերնացիոնալիզմի կենարար կապերի հետագա ընդլայնումը և ամրապնդումը։

XXV համագումարը լսեց և քննարկեց ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար ընկեր Լ. Ի. Բրեժնևի զեկուցումը՝ «ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեի հաշվետվությունը և կուսակցության հերթական խնդիրները ներքին ու արտաքին քաղաքականության բնագավառում»։

Ընկեր Լ. Ի. Բրեժնևի զեկուցումը պարունակում է մեր հայրենիքի տնտեսական և սոցիալ-քաղաքական զարգացման արդյունքների, աշխարհի այժմյան դրության, կուսակցության քաղաքական, կազմակերպչական և գաղափարական-դաստիարակչական աշխատանքի համապարփակ վերլուծությունը։ Դրանում առաջ է քաշված ՍՍՀՄ-ում կոմունիզմի հետագա կառուցման հոյակապ ծրագիրը, սահմանված են ՍՄԿԿ ներքին և արտաքին քաղաքականության գլխավոր ուղղությունները։ Դա հսկայական նշանակություն ունեցող փաստաթուղթ է, որը ստեղծագործաբար զարգացնում է մարքսիզմ-լենինիզմի տեսությունը, կոմունիստներին, բոլոր աշխատավորներին զինում հասարակական զարգացման հեռանկարների խոր ըմբռնմամբ։

Համագումարի պատգամավորները, ամբողջ կուսակցությունը և ժողովուրդը ՍՄԿԿ Կենտկոմի հաշվետու զեկուցումն ընդունեցին մեծ խանդավառությամբ։ Նրանց կոլեկտիվ կամքի արտահայտությունը հանդիսացավ համագումարի բանաձևը։



«1. Ամբողջովին ու լիովին հավանություն տալ կուսակցության Կենտրոնական կոմիտեի քաղաքական գծին և պրակտիկ գործունեությանը։

2. Հավանություն տալ ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեի հաշվետու զեկուցմանը և բոլոր կուսակցական կազմակերպություններին առաջարկել իրենց աշխատանքում ղեկավարվել ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեի հաշվետու զեկուցման մեջ ընկեր Լ. Ի. Բրեժնևի առաջ քաշած դրույթներով ու խնդիրներով»։

Համագումարը միահամուռ հաստատեց «ՍՍՀՄ ժողովրդական տնտեսության զարգացման 1976—1980 թվականների հիմնական ուղղությունները»։ Այդ հարցի առթիվ զեկուցումով հանդես եկավ ՍՍՀՄ Մինիստրների սովետի նախագահ ընկեր Ա. Ն. Կոսիգինը։

Համագումարը հանդես եկավ «Ազատությո՛ւն իմպերիալիզմի և ռեակցիայի կալանավորներին» հայտարարությամբ։

Համագումարը միահամուռ ընտրեց կուսակցության ղեկավար մարմինները։

Մեծ սովետական ժողովուրդը հսկայական քաղաքական և աշխատանքային խանդավառությամբ դիմավորեց հարազատ կուսակցության համագումարը։ Մեր անծայրածիր հայրենիքի բոլոր անկյուններում կայացած միտինգներում ու ժողովներում, ողջույնի նամակների հոսանքում, համագումարի պատվին աշխատանքային հերթափոխությունում ձեռք բերված նվաճումներով սովետական մարդիկ նոր ուժով են արտահայտում իրենց հայրենասիրական զգացմունքները, սերը և անսահման վստահությունը կուսակցության նկատմամբ, նրա Կենտրոնական կոմիտեի, անսասան լենինյան, մեր ժամանակի ականավոր քաղաքական գործիչ, խաղաղության անխոնջ մարտիկ ընկեր Լ. Ի. Բրեժնևի գլխավորությամբ Կենտկոմի քաղբյուրոյի բեղմնավոր գործունեությանը լիակատար հավանություն տալը։

ՍՄԿԿ XXIV համագումարից հետո անցած հինգ տարում Սովետական Միությունը նոր բնագծեր է նվաճել կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծման գործում։ Իններորդ հնգամյակի ընդհանուր արդյունքների գնահատման ժամանակ գլխավորն այն է, որ սովետական ժողովրդի անձնվեր աշխատանքը, կուսակցության ուղղություն տվող դերը ապահովեցին ժողովրդական տնտեսության կայուն աճը, կանխագծված սոցիալ-տնտեսական խնդիրների հաջող լուծումը։

Արդյունաբերական արտադրանքի, կապիտալ ներդրումների, ժողովրդի բարեկեցության բարձրացման ուղղությամբ միջոցառումների համար պետության հատկացումների բացարձակ աճի տեսակետից իններորդ հնգամյակը լավագույնն է երկրի պատմության մեջ։

«...Մեր տնտեսական զարգացման ուղղությունը և բնույթը լիովին համապատասխանում էին ՍՄԿԿ XXIV համագումարի սկզբունքային դրույթներին և դիրեկտիվներին,— հայտարարեց ընկեր Լ. Ի. Բրեժնևը։— Կոմունիստական կուսակցության ղեկավարությամբ իններորդ հնգամյակում նոր, խոշոր առաջընթաց քայլ արվեց կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծման, ժողովրդի կենսամակարդակի բարձրացման, երկրի անվտանգության ապահովման ուղղությամբ։ Սա է XXIV և XXV համագումարների միջև ընկած ժամանակաշրջանում կուսակցության տնտեսական գործունեության քաղաքական արդյունքը։ Սա է սովետական մարդկանց հերոսական աշխատանքի գլխավոր արդյունքը»։

ՍՄԿԿ XXV համագումարը կոնկրետացրեց և զարգացրեց զարգացած սոցիալիստական հասարակարգի պայմաններում կուսակցության տնտեսական քաղաքականության սկզբունքային դրույթները առաջիկա հնգամյակի և ավելի երկարատև հեռանկարի համար։ Իրենց գլխավոր խնդիրներով, տնտեսական գործունեության հիմնական ուղղություններով իններորդ և տասներորդ հնգամյա պլանները իրենցից ներկայացնում են մի տեսակ միասնական ամբողջություն։ Խոսքը կուսակցության տնտեսական քաղաքականության երկարաժամկետ

կողմնորոշման մասին է, որի մեջ մենք տեսնում ենք, եթե օգտագործենք Վ. Ի. Լենինի արտահայտությունը, «մեր աշխատանքի, մեր քաղաքականության, մեր տակտիկայի, մեր ստրատեգիայի ընդհանուր պլանը»:

Կուսակցության բարձրագույն նպատակն է ժողովրդի բարեկեցության անշեղ բարձրացումը: Դեպի այդ նպատակը տանող նրա տնտեսական ստրատեգիան կայանում է հասարակական արտադրության դինամիկ և համամասնորեն զարգացման, նրա արդյունավետության բարձրացման, գիտատեխնիկական առաջադիմության արագացման, աշխատանքի արտադրողականության աճի, ժողովրդական տնտեսության բոլոր օղակներում աշխատանքի որակի ըստ ամենայնի բարելավման մեջ: Այս ամենը արտահայտված է տասներորդ հնգամյակի գլխավոր խնդրում: Միաժամանակ մշակվում են հեռանկարում՝ մինչև 1990 թվականը, երկրի էկոնոմիկայի զարգացման ելակետային դրույթները: Հայտնի է, որ 1976—1990 թվականներին երկիրը ունենալու է մոտավորապես երկու անգամ ավելի շատ նյութական ու ֆինանսական ռեսուրսներ, քան ունեցել է անցած տասնհինգ տարում: Դրանով իսկ նոր հնարավորություններ են ստեղծվում կուսակցության ծրագրով, վերջին համագումարների կողմից առաջադրված հիմնական սոցիալ-տնտեսական խնդիրների լուծման համար: Դա առաջին հերթին վերաբերում է սովետական մարդկանց աշխատանքի և կենցաղի պայմանների հետագա բարելավմանը, նրանց կուլտուրայի մակարդակի բարձրացմանը, այն ամենին, ինչ նպաստում է նոր մարդու ձևավորմանը, անհատի բազմակողմանի զարգացմանը, սոցիալիստական ապրելակերպի կատարելագործմանը:

Տասներորդ հնգամյակում առաջ է քաշվում սոցիալական ընդարձակ ծրագիր, որով նախատեսվում է բանվորների և ծառայողների աշխատավարձը բարձրացնել 16—18 տոկոսով, հանրային տնտեսությունից կոլտնտեսականների եկամուտները՝ 24—27 տոկոսով, սպառման հասարակական ֆոնդերի հաշվին վճարումներն ու արտոնությունները ավելացնել 28—30 տոկոսով: Կկառուցվի 545—550 միլիոն քառակուսի մետր բնակելի տարածություն: Մի շարք միջոցառումներ են իրականացվում առողջապահության, ժողովրդական կրթության և կուլտուրայի հետագա զարգացման ուղղությամբ:

Կուսակցության տնտեսական ստրատեգիայի առանցքը, որը ներթափանցում է և՛ տասներորդ հնգամյակի, և՛ ավելի երկարատև հեռանկարի մեջ, երկրի տնտեսական հզորության անշեղ մեծացումն է, արտադրական ֆոնդերի ընդլայնումը և արմատական նորացումը, ծանր արդյունաբերության՝ մեր էկոնոմիկայի հիմքի, կայուն, հավասարակշռված աճի ապահովումը: Բարելավվում է արտադրողական ուժերի տեղաբաշխումը, նախատեսվում է Սիբիրի, Հյուսիսի, Միջին Ասիայի և Հեռավոր Արևելքի շրջանների հետագա յուրացում:

Երկրի առջև ծառացած բազմազան տնտեսական ու սոցիալական խնդիրների լուծման հաջողությունը կորոշվի աշխատանքի արտադրողականության արագ աճով, ամբողջ հասարակական արտադրության արդյունավետության բարձրացմամբ: Շեշտը արդյունավետության վրա դնելը մեր ամբողջ տնտեսական ստրատեգիայի կարևորագույն բաղկացուցիչ մասն է: Նոր հնգամյակը արդյունավետության և որակի հնգամյակ է: Ըստ որում, կուսակցությունը չի մոռանում նաև քանակական աճի մասին: Պլանավորվում է ազգային եկամուտը 1980 թվականին հասցնել 457,5 միլիարդ ռուբլու, այսինքն ավելացնել 96 միլիարդով: Արդյունաբերության արտադրանքը կաճի գրեթե 197 միլիարդով և կգերազանցի 720 միլիարդ ռուբլուց:

Աշխատանքի արտադրողականության բարձրացումը պետք է ապահովի արդյունաբերական արտադրանքի աճի մոտ 90 տոկոսը, գյուղատնտեսության և շինարարության արտադրանքի ամբողջ աճը:

Այդ լույսի տակ համագումարում նշվեցին պլանավորման ոլորտում տնտեսական գործունեության մեջ եղած թերությունները և չլուծված պրոբլեմները: Արտադրական կարողությունների մի մասը չի գործարկվել կամ ժամա-



նակին չի յուրացվել: Որոշ ճյուղերում նեղ տեղ է մնում գիտության ու տեխնիկայի նվաճումների արմատավորումը արտադրության մեջ: Հատկապես անհանդուրժելի են աշխատաժամանակի կորուստները, պարապուրդները, անհամաչափությունը աշխատանքում, թույլ աշխատանքային ու տեխնոլոգիական կարգապահությունը, կադրերի մեծ հոսունությունը մի շարք ձեռնարկություններում: Անհրաժեշտ է ավելի խնայողաբար օգտագործել նյութական և ֆինանսական ռեսուրսները, մենք պետք է դրանք խնայենք մեզ համար ամենաթանկի՝ հայրենիքի հարստության և հզորության, ժողովրդի բարեկեցության և բարգավաճման համար:

Նոր հնգամյակում կապիտալ ներդրումների ծավալը ժողովրդական տնտեսության մեջ կկազմի մոտ 630 միլիարդ ռուբլի, այսինքն կաճի 24—26 տոկոսով: Ըստ որում, նյութական և ֆինանսական ռեսուրսներն առաջին հերթին կուղղվեն գործող ձեռնարկությունների տեխնիկական վերազինմանը և վերակառուցմանը:

Տասներորդ հնգամյա պլանը, ինչպես և բոլոր հնգամյա պլանները, կլինի մեր մեծ սոցիալիստական հայրենիքը կազմող բոլոր հանրապետությունների, ազգերի և ազգությունների զարգացման ծրագիրը: Ամբողջ երկրի սահմաններում ստեղծված միասնական տնտեսական օրգանիզմը ՍՍՀՄ ժողովուրդների բարեկամության և համագործակցության կայուն նյութական հիմքն է:

Համագումարը սահմանեց արդի փուլում էկոնոմիկայի զարգացման հանգուցային պրոբլեմները: Դրանց շարքում առաջնահերթ է գիտատեխնիկական առաջադիմության արագացումը: Կուսակցությունը ելնում է այն բանից, որ միայն սոցիալիզմի պայմաններում է գիտատեխնիկական հեղափոխությունը ստանում ճիշտ, մարդու և հասարակության շահերին համապատասխանող ուղղություն: Իր հերթին միայն գիտության ու տեխնիկայի արագ զարգացման հիման վրա կարող են լուծվել սոցիալական հեղափոխության արմատական խնդիրները՝ կոմունիստական հասարակարգի կառուցումը:

Մեր հայրենիքի գիտատեխնիկական պոտենցիալը անշեղորեն աճում է, բայց դեռ շատ բան պետք է արվի ինչպես գիտության հիմքի զարգացման, այնպես էլ գիտական գաղափարների պրակտիկ արմատավորման համար, պատմական նշանակություն ունեցող այդ պրոցեսի մեջ ներգրավելով հասարակական արտադրության բոլոր մասնակիցներին, տնտեսական մեխանիզմի բոլոր օղակները:

Հնգամյակում խնդիր է դրվում ապահովել գյուղատնտեսական արտադրության հետագա որակական վերափոխումը: Կապիտալ ներդրումներն այդ ճյուղում կհասնեն 172 միլիարդ ռուբլու, կամ անցած հնգամյակի համեմատությամբ 41 միլիարդ ռուբլով ավելի կկենտրոնացվեն հիմնական ուղղություններում՝ գյուղատնտեսության մեքենայացման, մելիորացման և քիմիացման վրա:

Գյուղատնտեսության նյութատեխնիկական բազայի ամրապնդմանը համեմատ, ամբողջ հասակով մեկ ծառանում է դրա արդյունավետությունը բարձրացնելու, բոլոր որակական ցուցանիշները բարելավելու խնդիրը, այն հաշվով, որպեսզի նյութական ռեսուրսները փոխհատուցվեն առավելագույն չափով, որպեսզի ավելի լավ օգտագործվեն կոլտնտեսությունների և սովխոզների ներքին ռեզերվները: Կշարունակվի արտադրության մասնագիտացումը և համակենտրոնացումը միջտնտեսային կոոպերացման և ագրո-արդյունաբերական ինտեգրացման հիման վրա: Կուսակցությունը գյուղատնտեսության հետագա վերելքը դիտում է որպես կարևորագույն համապետական, համաժողովրդական խնդիր:

Համագումարն ընդգծեց ժողովրդական սպառման ապրանքների արտադրության ըստ ամենայնի ավելացման և որակի բարձրացման, առևտրի և աշխատավորների կենցաղային սպասարկման բարելավման անհրաժեշտությունը:

Տնտեսական հանգուցային պրոբլեմների շարքում ավելի ու ավելի մեծ նշանակություն է ստանում արտաքին տնտեսական կապերի զարգացումը։ Մեր երկիրը ակտիվորեն մասնակցում է սոցիալիստական տնտեսական ինտեգրացիային, որը ամրապնդում է եղբայրական երկրների համագործակցության հզորությունն ու համախմբվածությունը, ընդլայնում է համագործակցությունը զարգացող երկրների հետ, որով հեշտանում է նրանց էկոնոմիկայի և հասարակական կյանքի վերակառուցումը առաջադիմական սկզբունքներով։ Կապիտալիստական պետությունների հետ տնտեսական և գիտատեխնիկական կապերը ամրապնդում և ընդլայնում են խաղաղ գոյակցության քաղաքականության նյութական բազան։

Ղեկավարվելով լենինյան այն ցուցումով, որ երբ ճիշտ քաղաքականությունը, ճիշտ գիծը մշակված է, գործի հաջողությունը առաջին հերթին կախված է կազմակերպումից, համագումարը մեծ ուշադրություն դարձրեց էկոնոմիկայի կառավարման հարցերին։ Անհրաժեշտ է առաջին հերթին ապահովել պլանավորման լուրջ կատարելագործումը, որը ենթադրում է ուժերի և ռեսուրսների համակենտրոնացում կարևորագույն համապետական ծրագրերի լուծման վրա, ճյուղային և տերիտորիալ զարգացման, հեռանկարային և ընթացիկ պրոբլեմների առավել հմտորեն զուգակցում, հավասարակշռված էկոնոմիկայի ապահովում։ Կառավարչական գործունեությունը պետք է նպատակաուղղված լինի բարձր վերջնական ժողովրդատնտեսական արդյունքների հասնելուն։ Մյուս ուղղությունն է տնտեսական խթանների և լծակների առավել հմտորեն օգտագործումը, մինիստրությունների, միավորումների և ձեռնարկությունների աշխատանքի գնահատման հիմքում դրված ցուցանիշների, առաջին հերթին դրա արդյունավետության և որակի ցուցանիշների սիստեմի կատարելագործումը։ Կարևոր է բարելավել կառավարման կազմակերպական կառուցվածքն ու մեթոդները դեմոկրատական ցենտրալիզմի սկզբունքների հիման վրա։ Իրականացնելով մարքս-լենինյան քաղաքական ղեկավարությունը սոցիալիստական հասարակության կյանքի բոլոր ոլորտների նկատմամբ, ՍՄԿԿ-ն հետևողականորեն հոգ է տանում իր շարքերի գաղափարական զինման, նրանց կազմակերպական միասնության ամրապնդման, կուսակցական աշխատանքի ձևերի ու մեթոդների կատարելագործման մասին։ XXV համագումարը նշեց կուսակցության զգալի աճը, նրա որակական կազմի բարելավումը վերջին տարիներին։ Նա ընդգծեց, որ զարգացած սոցիալիզմի պայմաններում էլ, երբ ՍՄԿԿ-ն դարձել է ամբողջ ժողովրդի կուսակցությունը, նա բնավ չի կորցնում իր դասակարգային բնույթը, իր բնույթով եղել է և մնում է բանվոր դասակարգի կուսակցությունը։

Սոցիալիզմի ժամանակ հասարակական զարգացման ամբողջ ընթացքից բխող օբյեկտիվ տենդենցը կայանում է նրանում, որ ուժեղանում է թարմ ուժերի հոսքը կուսակցության մեջ։ Սակայն նա չի արագացնում թվական աճը, այլ իր շարքերն է ընդունում միայն նրանց, ովքեր գործով ապացուցել են, որ կուսակցության շարքերն են գալիս ոչ թե ինչ-որ օգուտներ ստանալու համար, այլ կոմունիզմի օգտին անձնվիրաբար աշխատելու համար։ Լենինի պատգամներին հետևելով՝ կուսակցության անդամի կոչումը բարձրացնելու գործում կարևոր դեր խաղաց կուսակցական փաստաթղթերի փոխանակումը, որը անցկացվեց XXIV համագումարի որոշմամբ։

Կուսակցության բոլոր օղակների կազմակերպված, ակտիվ և նպատակասլաց աշխատանք կարելի է ապահովել միայն աննահանջորեն կիրառելով կուսակցական կյանքի լենինյան նորմաները և կուսակցական ղեկավարության սկզբունքները, դեմոկրատական ցենտրալիզմի սկզբունքը։ XXV համագումարը



ամփոփեց այդ ուղղությամբ կուսակցության ակտիվ գործունեությունը։ Ներկուսակցական դեմոկրատիայի հետևողական զարգացումը, կուսակցության յուրաքանչյուր անդամի նկատմամբ պահանջկոտության բարձրացումը, համագումարն ընդգծեց, որ լենինյան այս սկզբունքներն անցած էտապ չեն։ Դա կուսակցության գործունեության հիմքն է նաև մեր օրերում։ Կուսակցական ղեկավարության հաջողության կարևոր պայմանն է աշխատանքի լենինյան ոճը՝ բոլոր հասարակական պրոցեսների նկատմամբ ստեղծագործական, սուբյեկտիվիզմին խորթ, գիտական մոտեցմամբ ներթափանցված ոճը։ Այն ենթադրում է բարձր պահանջկոտություն իր և ուրիշների նկատմամբ, բացառում է ինքնագոհությունը, բյուրոկրատիզմի և ձևականության ամեն մի դրսևորում։ Այս կապակցությամբ համագումարը նշեց այն մեծ նշանակությունը, որը կուսակցությունը տալիս է քննադատությանն ու ինքնաքննադատությանը, վերահսկողությանը և ընդունված որոշումների կատարման ստուգմանը։

Համագումարում նշվեց, որ կուսակցության կադրային քաղաքականությունը այն հզոր լծակն է, որի միջոցով նա ներգործում է հասարակական զարգացման ընթացքի վրա։ Ժամանակակից ղեկավարը պետք է իր մեջ օրգանապես միավորի կուսակցականությունը խոր գործիմացության հետ, կարգապահությունը՝ ձեռներեցության և գործի նկատմամբ ստեղծագործական մոտեցման հետ։ Դրա հետ միասին ղեկավարը պարտավոր է ամեն մի տեղամասում հաշվի առնել նաև սոցիալ-քաղաքական դաստիարակչական կողմերը, զգայուն լինի մարդկանց նկատմամբ, օրինակ ծառայի աշխատանքում և կենցաղում։ Կուսակցությունն այսուհետև կադրերի նկատմամբ կցուցաբերի հոգատար, ուշադիր վերաբերմունք, այն զուգակցելով խիստ պահանջկոտության և սկզբունքայնության հետ։

Մեր հասարակարգի ուժը մասսաների գիտակցականության մեջ է։ Եվ կոմունիստական գիտակցականության, կոմունիզմ կառուցելու կամքի ու կարողության դաստիարակումը կուսակցությունը համարում է իր մշտական հոգսը։ Ելնելով այն բանից, որ մարքսիզմ-լենինիզմը ճիշտ ստրատեգիայի և տակտիկայի մշակման միակ հուսալի հիմքն է, կուսակցությունը առաջնահերթ ուշադրություն է դարձնում հեղափոխական տեսության զարգացմանը։ ՍՄԿԿ XXV համագումարը ամփոփեց XXIV համագումարից հետո կուսակցության տեսական գործունեության, հասարակական գիտությունների բնագավառում կատարված հետազոտությունների արդյունքները, որոշեց դրանց առավել հեռանկարային ուղղություններն ու պրոբլեմները։

Ամբողջությամբ վերցրած, գաղափարական-դաստիարակչական աշխատանքի բնագավառում մենք առաջ ենք շարժվել։ Սակայն ժողովրդի գիտակցականության և լավատեղյակության աճը այդ աշխատանքին ներկայացնում է բարձր պահանջներ։ Դրանք կապված են նաև այն բանի հետ, որ միջազգային լարվածության թուլացման շնորհիվ, սոցիալիզմի գաղափարների լայն տարածման համար, բարենպաստ հնարավորությունների ստեղծման հետ, այժմ ավելի ակտիվ է դառնում երկու սիստեմների գաղափարական հակամարտությունը։ Երկու աշխարհայացքների պայքարում, նշեց ՍՄԿԿ XXV համագումարը, չեն կարող տեղ ունենալ չեզոքությունն ու փոխզիջումները։ Այստեղ պահանջվում են բարձր քաղաքական զգոնություն, ակտիվ, օպերատիվ և համոզիչ պրոպագանդիստական աշխատանք, ժամանակին հակահարված գաղափարական դիվերսիաներին։

Գաղափարական գործունեության արդյունավետությունը բարձրացնելու մեր ուղին է դաստիարակության ամբողջ գործի դրվածքի կոմպլեքսայնությունը, այսինքն՝ բնակչության տարբեր խմբերի առանձնահատկությունների հաշվառմամբ գաղափարական-քաղաքական, աշխատանքային և բարոյական դաստիարակության սերտ միասնության ապահովումը։ Համագումարը հատուկ ուշադրություն դարձրեց կոմունիզմ կառուցողների աճող սերնդի բարոյական-քաղաքական կոփմանը։

*զարացի խաղաղության համար մեր պայքարի նոր հաղթանակների վստահության նշանաբանով»։*

*Ամբողջ կուսակցությունը, ամբողջ սովետական ժողովուրդը արտահայտում են իրենց ջերմ, լիակատար հավանությունը ՍՄԿԿ XXV համագումարի աշխատանքին, նրա պատմական որոշումներին։ Այդ որոշումները մեզ ցույց են տալիս միակ ճիշտ ուղին՝ ճշմարտության ուղին, ազատության ուղին, ժողովրդական երջանկության ուղին։*

*XXV համագումարի որոշումները հզոր խթան են նոր պանծալի սխրանքների համար։ Այդ որոշումների կատարումը յուրաքանչյուր կոմունիստի, յուրաքանչյուր կուսակցական կազմակերպության, մեր ամբողջ կուսակցության պատվի գործն է։ Նրանք կոչված են գլխավորելու մասսաներին, որոնք համագումարի որոշումներին պատասխանում են սոցիալիստական մրցության նոր վերելքով, իրենց կոմունիստական ավանդարդի շուրջը հետագա համախմբմամբ։*

*Հարազատ լենինյան կուսակցության իմաստուն ղեկավարությամբ սովետական ժողովուրդը վստահորեն առաջ է ընթանում մարդկության պատմության մեջ առաջին կոմունիստական հասարակարգի կառուցման ճանապարհով։*

(«ՊՐԱՎԴԱ»-Ի ՄԱՐՏԻ 8-Ի ԱՌԱՋՆՈՐԴՈՂԸ)



Адрес редакции: 375033, Ереван 33. Барекамутян 59 г.

Խմբագրության հասցեն՝ 375033, Երևան—33, Բարեկամության 59 գ.: Հեռախոսներ՝ գլխավոր խմբագրի տեղակալ՝ 27—25—29, պատ. քարտուղար, պրոպագանդայի բաժին և էկոնոմիկայի բաժին՝ 27—37—80, կուսակցական կյանք և կուլտուրայի բաժիններ՝ 27—19—80, գրական աշխատողներ՝ 27—60—64:

*ՎՖ 00095 Պատվեր 515 Թղթի չափսը 70×108 1/16։ Տիրաժ 14.500 Գինը 20 կոպ.*

*Տպ. 6 մամուլ, մամուլում 68840 նիշ։ Ստորագրված է տպագրության 15/III-1976 թ.։*

*ՀԿԿ Կենտկոմի հրատարակչության տպարան։ Ավ. Իսահակյան փող. № 28։*

# Ձեզ համար, ընթերցողնե՛ր

## Ն Ո Ր  Գ Ր Ք Ե Ր

Վ. Ի. ԼԵՆԻՆ— Երկերի լիակատար ժողովածու. հ. 4։ *«Հայաստան» հրատ., 1975։*

Վ. Ի. ԼԵՆԻՆ— Երկերի լիակատար ժողովածու. հ. 5։ *«Հայաստան» հրատ., 1975։*

В. И. ЛЕНИН—**Избранные произведения.** В трех томах. т. 2, М.. Политиздат, 1975.

**Владимир Ильич Ленин. Биографическая хроника.** 1870—1924. т. 6, июль 1918—март 1919. М., Политиздат, 1975.

**Ленин и «Известия».** М., Политиздат, 1975.

**В. И. ЛЕНИН, КПСС о борьбе с национализмом.** Документы и материалы. Изд. 2., доп. М., Политиздат, 1975.

В. И. ЛЕНИН—**Критические заметки по национальному вопросу. О праве наций на самоопределение. О национальной гордости великороссов.** М., Политиздат, 1975.

Լ. Ի. ԲՐԵԺՆԵՎ— Հայրենական գիտության պարծանքը։ *«Հայաստան» հրատ., 1975։*

Հանուն խաղաղության, անվտանգության և համագործակցության։ *Հելսինկիում կայացած Եվրոպայի անվտանգության և համագործակցության խորհրդակցության արդյունքների շուրջ (1975 թ. հուլիսի 30-ից օգոստոսի 1-ը)։ «Հայաստան» հրատ., 1975։*

ՍՍՀՄ ժողովրդական տնտեսության զարգացման 1976—1980 թթ. հիմնական ուղղությունները։ *«Հայաստան» հրատ., 1976։*

Հ. ԲԱՂԴԱՍԱՐՅԱՆ— Սովետական մարդը։ *«Հայաստան» հրատ., 1975։*

Ա. ՀՈՎՍԵՓՅԱՆ— Կառավարման սոցիոլոգիայի մի քանի հարցեր։ *«Հայաստան» հրատ., 1975։*

**Р. П. Конюшая—Карл Маркс и революционная Россия.** М., Политиздат, 1975.

Ф. Ф. ПЕТРЕНКО, С. С. ВИШНЕВСКИЙ—**Вопросы социально-политического развития советского общества. Вопросы внутренней и внешней политики КПСС.** М., «Политиздат», 1975.

В. Г. ТРУХАНОВСКИЙ—**Мирное сосуществование—норма отношений государств с различным общественным строем. М.,** изд. «Международные отношения», 1975.

Ю. А. КРАСИН—**Революцией устрашенные. Критический очерк буржуазных концепций социальной революции.** М., «Политиздат», 1975

А. А. АМВРОСОВ—**Социальная структура советского общества.** М., «Политиздат», 1975.

Գիտական աթեիզմ։ *Դասագիրք բուհերի համար։ «Հայաստան» հրատ., 1975։*

Դեկաբրիստներ։ *Ընտիր երկեր։ «Հայաստան» հրատ., 1975։*

Մ. ՄԵՐԺԱՆՈՎ— Զինվորը, գեներալը, մարշալը։ *Ի. Ք. Բաղրամյանի մասին։ «Հայաստան» հրատ., 1975։*

**Люди молчаливого подвига. Очерки о разведчиках. М.,** «Политиздат», 1975.

Э. ДЗЕЛЕПИ—**Секрет Черчилля (К третьей мировой войне — 1945).** перевод с франц., изд. «Прогресс», 1975.

Գինը՝ 20 կ. Индекс 77783

# ԳԻՏՈՒԹՅԱՆ ԵՎ ՏԵԽՆԻԿԱՅԻ ՆՈՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ

### ԼԱԶԵՐԱՅԻՆ ԼՈՒՅՍԸ ԳՅՈՒՂԱՏՆՏԵՍՈՒԹՅԱՆ ՄԵՋ

*Գյուղատնտեսական բույսերի աճման տևողությունը կրճատելու, դրանք սախարոզայով, սպիտակուցներով հարստացնելու համար ՍՍՀՄ գիտությունների ակադեմիայի կիրառական ֆիզիկայի ինստիտուտի աշխատակիցները պատրաստել են կենսաբանական օբյեկտների լազերային ճառագայթիչ. ցանելուց առաջ սերմը ենթարկում են լազերային ճառագայթման:*

### ԱԿՆԱԲՈՒՅԺԻ ԼՈԿԱՏՈՐ

*Բժշկական սարքաշինական միության գիտահետազոտական ինստիտուտում ստեղծվել է ուլտրաձայնային «Էխ—21» ինքնատիպ լոկատոր ակնաբույժների համար: Սարքն արտացոլում է տարբեր ակուստիկ դիմադրողականություն ունեցող կառուցվածքների (աչքի ոսպնյակի, ցանցիկների, օտար մարմինների, ուռուցքների) ուլտրաձայնային տատանումները, որի հիման վրա և բժիշկն ախտորոշում է աչքի հիվանդությունը:*

### ԲՈՒԼԴՈԶԵՐՆ ՈՒ ՕԴԸ

*Խարկովի ավտոճանապարհային ինստիտուտի գիտնականները քաղաքի ճանապարհային մեքենաների գործարանի կոլեկտիվի հետ մեկտեղ ստեղծել են յուրահատուկ բուլդոզեր, որի արտադրողականությունը մոտ 2 անգամ բարձր է, քան սովորական համանման մեքենաներինը: Բուլդոզերի վրա տեղադրված հսկա կոմպրեսորը խտացված օդի հոսքն ուղղում է այնպես, որ մեքենայի աշխատող թիի մակերեսի և գետնի միջև գոյանում է օդային բարձ— յուրահատուկ «քսուք», այն դյուրացնում է բուլդոզերի դանակի աշխատանքը: Դրա շնորհիվ դանակը հեշտությամբ մտնում է գետնի մեջ:*

### ՀԱԿԱՀՐԴԵՀԱՅԻՆ ՄԻՋՈՑ

*Անգլիական ֆիրմաներից մեկը մշակել է մի նյութ, որը ցանում են բնակելի տների, վարչական շենքերի, հիմնարկությունների և ձեռնարկությունների ամեն տեսակ հյուսվածքների, շինանյութերի վրա: Այն խիստ նվազեցնում է դրանց այրվելու վտանգը: Նյութը բաղկացած է օրգանական աղի լուծույթից, որը կարելի է խառնել նաև փափուկ կահույքը, սավանները, բարձի երեսները, փայտեղենը, պաստառը մաքրող լուծույթին: Լուծույթով մշակված նյութերը չեն բոցավառվում նույնիսկ 2.000 աստիճան ջերմության դեպքում:*

### ԱՎՏՈՄԱՏԱՑՎԱԾ ՏՐԱՆՍՊՈՐՏ

*Ճապոնիայում մշակվել է ռելսային ավտոմատացված տրանսպորտ, որը գործում է առանց վարորդների: 70 կմ/ժամ արագություն ունեցող այդ վագոնները կառավարում են էլեկտրոնային հաշվիչ մեքենաները: Վագոններն ունեն հորիզոնական և ուղղահայաց անիվներ, 24 նստատեղ, 26 ուղևոր էլ կարող է ազատ կանգնել: Տրանսպորտային նոր սիստեմը ժամում տեղափոխում է մինչև 18 հազար ուղևոր: Այն նախատեսված է նոր քաղաքների և հին քաղաքների կենտրոնական մասերը օդանավակայանների հետ կապելու համար:*



ՊՐՈԼԵՏԱՐՆԵՐ ԲՈԼՈՐ ԵՐԿՐՆԵՐԻ, ՄԻԱՑԵՔ

# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

ՀԿԿ ԿԵՆՏԿՈՄԻ ԱՄՍԱԳԻՐ

4

ԱՊՐԻԼ

ԵՐԵՎԱՆ ● 1976